# „ՄԻԼԻՈՆ ՀԱՅՐԵՆԻՔԻՆ"

Այս նշանաբանն է կրում թղթի մակուլատուրայի և երկրորդական պոլիմերային նյութերի հավաքման մասին ՀամԼԿԵՄ Կենտկոմի, ՍՍՀՄ Պետմատի, ՍՍՀՄ լուսավորության մինիստրության կոլեգիայի և երկրորդական հումքի մթերման և նախնական վերամշակման կենտրոնական վարչության հայտարարած դպրոցական, կոմերիտական ու պիոներական կազմակերպությունների համամիութենական մրցությունը:

Թղթի մակուլատուրան մեր երկրում ստվարաթղթի և թղթի արտադրության հիմնական հումքերից է համարվում: Ամեն տարի արտադրվում է 8 միլիոն տոննա թուղթ և ստվարաթուղթ, որի 20 տոկոսը պատրաստվում է երկրորդական հումքից:

Մեկ միլիոն տոննա մակուլատուրայի հավաքումը խնայում է չորս միլիոն խորանարդ մետր փայտանյութ:

Թղթի հումքի հավաքման ավելացումը մոտակա տարիներին կնպաստի գրքերի, դասագրքերի, տետրերի, կոմերիտական ու պիոներական թերթերի և ամսագրերի հրատարակությունների աճին:

## ՄՐՑՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ

Համամիութենական մրցության հաղթողները կպարգևատրվեն.

հանրապետական, երկրամասային, մարզային, կոմերիտական և պիոներական կազմակերպությունները՝ ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ Կարմիր դրոշով և դրամական պարգևով,

քաղաքային և գյուղական կոմերիտական և պիոներական կազմակերպությունները՝ ՀամԼԿԵՄ Կենտկոմի պատվոգրով և դրամական պարգևով,

դպրոցների կոմերիտական և պիոներական կազմակերպությունները՝ ՀամԼԿԵՄ Կենտկոմի, Վ. Ի. Լենինի անվան Համամիութենական պիոներական կազմակերպության կենտրոնական խորհրդի պատվոգրերով և արժեքավոր պարգևներով,

լավագույն հավաքողները՝ ՀամԼԿԵՄ Կենտկոմի «Արտեկ» և «Օրլյոնոկ» պիոներական ճամբարների ուղեգրերով, ինչպես նաև գեղարվեստական գրքերով:

«Միլիոն՝ հայրենիքին» նշանաբանով մրցությունը անցկացվում է 1974 թվականի սեպտեմբերի մեկից մինչև 1976 թվականի սեպտեմբերի մեկը:

ՀամԼԿԵՄ Կենտկոմը, ՍՍՀՄ Պետմատը, ՍՍՀՄ լուսավորության մինիստրության կոլեգիան և երկրորդական հումքի մշակման կենտրոնական խորհուրդը մրցության արդյունքները կամփոփեն յուրաքանչյուր ուսումնական տարվա վերջին:

# Հայրապետ

(Ծննդյան 100-ամյակին)

*Նրա բանաստեղծությունները հեշտությամբ սովորում և հաճախակի արտասանում են նախքան գրաճանաչ դառնալը: Պատճառն անմիջականությունն ու պարզությունն է, որով բանաստեղծն անարգել ճանապարհ է հարթում դեպի մանուկների սիրտը:*

*Նրա շատ բանաստեղծություններ այնքան ծանոթ ու հարազատ են, որ վերնագիրն իմանալուց հետո ոչ թե արտասանելու, այլ երգելու ցանկություն է առաջանում, քանի որ երգ են դարձել: Հիշենք, օրինակ, «Սարյակի տունը»:*

Սարյակները մեր հերվան
Ծուտով էլի պիտի գան,
Բայց տնակը հնացած
Պետք չի գալու էլ նրանց:

Կարե՛ն, արի՛ միասին,
Նոր տուն շինենք մի կարգին,
Թե չէ — տեսնի տուն չկա,
Էլ մեր բակին մոտ չի գա:

Որդ ու թրթուր զանազան,
Ես ինչ գիտեմ, էլ ինչ բան,

## Լենին պապին

Լենին պապին էլ
Մանուկ է եղել,
Մեզ նման պստիկ,
Ժիր ու սիրունիկ:

Հոնել է թիթեռ,
Սիրել ծաղիկներ,
Սահնակով սղղալ,
Երգել ու խաղալ:

Բայց խաղ ու պարից,
Սահնակ, թիթեռից,
Երգից առավել
Ուսումն է սիրել:

# Հայրապետյան

Ներս կմտնեն մեր այգին,
Վնաս կտան ահագին:
Դե վե՛ր, գնա մուրճը բե՛ր,
Ես էլ՝ տախտակ ու մեխեր:

«Համբիկի նամակը», «Լենին պապին», «Հյուրը», «Ճամբարի առավոտը», «Հրաժեշտ», «Եղևնին», «Վերջին փաթիլները», կարելի է էլի բանաստեղծություններ թվարկել, որոնք նույնքան գրավիչ են ու երգեցիկ:

Հայրապետ Հայրապետյանը գրել է նաև բազմաթիվ հետաքրքիր առակներ, ավանդություններ, հեքիաթներ, կազմել «Այբբենարան», «Հայոց լեզու», «Ընթերցարան» դասագրքերը:

Սիրելի մանկագրի ծննդյան հարյուրամյակի առթիվ երախտագիտությամբ կարելի է կրկնել նրան նվիրված Ավետիք Իսահակյանի խոսքերը. «Դու ամբողջ կես դար, անսպառ եռանդով, մանկական աշխույժով, սիրով և սրտով աշխատել ես քո հայ մանուկների կրթության վեհ գործի համար, անձնվեր աշխատել ես խոսքով և գրչով, սերունդներ ես դաստիարակել, բարձրացրել նրանց հոգին և զարգացրել նրանց միտքը: Այսօր սովետական հասարակայնությունը, գնահատելով ըստ արժանվույն քո կատարած նվիրական գործը՝ հայտնում է իր խորին հարգանքը



և ջերմ շնորհակալությունը իր կուլտուրայի անխոնջ մշակին, և հայ աշակերտությունն ու մանուկ սերունդը բերում է իր սերն ու խանդավառությունը իր երախտավորին, իր բանաստեղծին, իր շատ սիրելի ուսուցչին»:

## Վերջին փաթիլները

Չարաճճի ու կռվարար
Փաթիլները պաղ ձյունի
Ուրախ խաղում, զարկում իրար,
Հրհրում են մեկմեկի:

Ապա հոգնած իջնում գետին,
Գրկախառնվում իրար հետ,
Եվ ջուր կտրած, ձայնով ուժգին
Առաջ վազում դեպի գետ:

Նկ. ՍԱՐԳԻՍ ԴԻԼԱՆՅԱՆԻ



# ԱՇԽԱՐՀԻ ԱՄԵՆԱՕՐԻՆԱԿԵԼԻ ՏՂԱՆ

ԱԶԱՏ ՇԱՀԻՆՅԱՆ

Նկ. ԳՐԻԳՈՐ ԹՈՐՈՍՅԱՆԻ

Չգիտեմ դուք ինչպես, բայց ես նախանձում եմ բոլոր օրինակելի տղաներին: Նրանք չափից ավելի հանգիստ են, ուշադիր ու քաղաքավարի: Նրանք այդ բոլորը այնպես հեշտ են անում, որ մարդ նախանձից ուղղակի քիչ է մնում տրաքվի: Ամեն կերպ աշխատում եմ, որ գոնե մի անգամ էլ ես այդպիսին լինեմ, չի ստացվում: Չարչարվում եմ, չարչարվում և մեկ էլ տեսար, հո՜պ, մի բան ժանգոտ մեխի պես ցցվեց գործիս մեջ ու ամեն ինչ փչացրեց:

Օրինակելի տղաներ ու աղջիկներ շատ կան: Բայց, ա՛յ, կա մեկը, որն ամենաօրինակելի տղան է բոլոր օրինակելիների մեջ:

Ես ու նա սովորում ենք միևնույն դպրոցի միևնույն դասարանում: Ապրում ենք միևնույն շենքի, միևնույն մուտքի, միևնույն հարկում: Մի լուսամուտ է բաժանում բակին նայող մեր պատշգամբներն իրարից:

Մեկ էլ տեսար, մի հաստափոր գիրք ձեռքին, պատշգամբ ելավ ու սկսեց կարդալ: Միայն չգիտեմ ինչու, հատկապես այն ժամանակ, երբ ես բակ եմ իջնում մի քիչ մաքուր օդ շնչելու, ավելի ճիշտ, երբ գնդակը աղմուկով գլորվում է մեր ոտքերի առջև:

Ես հենց որ նկատում եմ նրան, գլուխս կորցրած, ինձ աղմուկով գցում եմ տուն: Մայրիկս, որ ամեն անգամ հիացմունքից հալվում է նրան տեսնելիս, ցույց է տալիս պատշգամբում նստած Աշխարհի ամենաօրինակելի տղային ու ասում.

— Ապա մի նայի՛ր, թե ինչով է զբաղված ընկերդ և ինչով ես զբաղված դու: Մարդավայել ներս մտնել էլ չգիտես: Տուն ես ընկնում աղմուկ-աղաղակով, ոնց որ հինգ տարեկան տղա:

Ես, իհարկե, մեղավոր եմ: Ճիշտ է, ոչ մի օրինակելի տղա այդպես աղմուկով տուն չի մտնում: Բայց ձեզ եմ հարցնում, կարո՞ղ եք հարևան թաղի տղաներին տասնհինգով երեք հաղթելուց հետո ուրախությունից չգոռալ, մանավանդ, երբ այդ խփած գոլերի մի մասն էլ պատկանում է ձեզ՝ կենտրոնական հարձակվողներիդ:

— Ինչքան դուրս եմ գալիս պատշգամբ,— ասում է մայրս,— շարունակ գիրքը ձեռքին եմ տեսնում, իսկ դու....

Դե, իհարկե, գիրքը ձեռքին պատշգամբ դուրս գալը մի այնքան էլ դժվար բան չէ, բայց կարդա՜լ... Զարմանում եմ, ինչպե՞ս է նա կարողանում պատշգամբում գիրք կարդալ, երբ բակից շարունակ լսվում են տղաների ուրախ բացականչությունները և ուրիշ հրապուրիչ ձայներ:

Այդ բոլորը դեռ ոչինչ... Հարկավոր է տեսնել միայն, թե նա ինչպես է անցնում բակով և գլխի շարժումով աջ ու ձախ բարևում հարևաններին: Բարևելիս նա անպայման մի փոքր ժպտում է, հետո իսկույն լրջանալով, անցնում առաջ: Զարմանալին այն է, որ նա կարողանում է առանց քաշվելու, առանց շփոթվելու խոսել նույնիսկ մեր շենքում ապրող պրոֆեսորի հետ: Պրոֆեսորը մի շատ կատակասեր ծերուկ է, բայց չգիտեմ ինչու, նրան հանդիպելիս ես մի տեսակ շփոթվում եմ, գլուխս կորցնում: Դե, մտածում եմ, ինչքան չլինի պրոֆեսոր է, չէ՞: Բայց Օրինակելի տղան...

— Ողջո՜ւյն,— համարձակ ասում է նա:

— Բարև՛, երիտասա՛րդ,— ակնոցի վերևից նայելով, պատասխանում է պրոֆեսորը:

— Ինչպե՞ս են գործերը,— հարցնում է Օրինակելի տղան:

— Ոչինչ,— մի տեսակ ժպտում է պրոֆեսորը ու ավելացնում.— Իսկ ձեր դասերն ինչպե՞ս են, երիտասա՛րդ:

— Շնորհակալություն ուշադրության համար,— ասում է Օրինակելի տղան և արագ հեռանում:

— Ա՜խ, ինչ բարեկիրթ ու քաղաքավարի տղա է,— երանությամբ հառաչում է մայրս:— Ահա թե դու ումի՛ց պետք է օրինակ վերցնես:

Եվ մի օր, դրսում ուժեղ անձրև էր գալիս: Ես նկատեցի պրոֆեսորին ու գլխապատառ ինձ գցեցի բակ...

— Ողջո՜ւյն,—բարձրաձայն ասացի, ցցվելով նրա առջև:

— Բարև՛, երիտասա՛րդ,— ասաց նա ու ակնոցը մի փոքր ցած իջեցնելով, ոտքից-գլուխ զննեց ինձ,

կարծես առաջին անգամ էր տեսնում:

Մի տեսակ քրտինք տվեց վրաս: Զգացի, որ շփոթվում եմ, բայց այնուամենայնիվ...

— Ինչպե՞ս են գործերը,— ասացի ես:

Պրոֆեսորը դարձյալ ոտից-գլուխ զննեց ինձ և իր թրջված անձրևանոցը ցույց տալով, ասաց.

— Ինչպես տեսնում եք, երիտասա՛րդ:

Հայացքս չկտրելով նրա դեմքից, ինձ համար անսովոր ձգվածությամբ մի քայլ առաջ անցա և այն է ուզում էի ասել. «Շնորհակալություն ուշադրության համար», երբ «շնորհակալությունը» բերանումս, երկու ոտքով՝ չը՜մփ... ուղիղ ցեխաջրի մեջ:

— Սովորե՛ք, երիտասա՛րդ, ձեր ոտքերի տակ նայել,— վրդովված վրա բերեց պրոֆեսորը և իր շորերին թռած ցեխաջուրը թափ տալով, գնաց:

Դե էլ ի՞նչ... Ես թրջված տուն վերադարձա, նախանձելով Ամենաօրինակելի տղային, որն ամեն ինչ այնպես հեշտ ու հանգիստ էր անում:



Ես նստում եմ նախավերջին նստարանին, պատուհանի մոտ: Իմ կողքին նստում է Ամենաօրինակելի տղան: Մայրիկս ասելով, այդ շատ լավ է, որ նա իմ կողքին է նստում: Այդպես գուցե ես նրանից մի քիչ բարեկրթություն ու քաղաքավարություն սովորեմ:

Եվ այսպես, մենք երկուսով նստում ենք միևնույն շարքի, միևնույն նստարանին: Մեր դիմաց նստում են արևահար քթով տղան ու շեկլիկ հյուսքերով աղջիկը: Իսկ մեր ետևում «ծիծաղի սենյակն է»: Այդպես ենք անվանում մեր շարքի վերջին նստարանը, որի վրա նստում են դպրոցի ամենաանհոգ և ամենածիծաղելի երկու տղաները: Նրանք ծիծաղելի են հենց նրա համար, որ շարունակ ծիծաղում են: Բավական է դասարանում մի ճանճ տզզա, և երկուսն էլ միասին կսկսեն հռհռալ ու քրքջալ: Կարծես նրանք միայն նրա համար են աշխարհ եկել, որ անվերջ ծիծաղեն:

Մեր դասարանի պատուհանները նայում են փողոցին: Փողոցի մյուս կողմում, ուղիղ դպրոցի դեմդիմաց մի մեծ շենք են կառուցում:

Ես տեսնում եմ, թե ինչպես է բարձր, մետաղյա կռունկի քիթը ճոռոցով թեքվում աջ ու ձախ, բարձրացնելով բետոնե հսկա սալերն ու ամեն տեսակի շինանյութ: Չնայած շատ հետաքրքիր է այդ ամենը, բայց ես ստիպում եմ ինձ դասի ժամանակ դուրս չնայել: Չեմ նայի ու վերջ, մտածում եմ ես: Բայց արի տես, որ մետաղյա կռունկը իր բետոնե հսկա սալի հետ գալիս և դասարանի պատուհանից ճոռոցով կախվում է քթիս վրա: Դա պատահում է հատկապես վերջին դասին, երբ զանգի ձայնը հակառակի պես ուշանում է մի ամբողջ տարով: Այդ ժամին դասարանում մի տեսակ ծանր, թմրեցնող լռություն է տիրում:

— Իտալացի նշանավոր գիտնական Տորիչելլին մի այսպիսի փորձ կատարեց,— շարունակում է պատմել ուսուցչուհին:

Բայց նրա բառերի փոխարեն, իմ ետևի նստարանից, ականջիս են հասնում ֆսսոցներ և ուրիշ այլ քնաբեր շշուկներ:

Ես բարկացած շրջվում եմ, և ի՞նչ... «Ծիծաղի սենյակի» տղաներից մեկը, գլուխը կիսադատարկ բարձի պես մի կողմ թեքած, անհոգ ու երջանիկ ննջում է՝ քթածակերից երկարատև սուլոցներ արձակելով: Իսկ մյուսը ձգված նստել ու մշուշված աչքերը ուսուցչուհուն հառած, ախորժակով հորանջում է: Չգիտեմ դուք ինչպես, բայց ես, երբ հորանջող մարդ եմ տեսնում, իսկույն վարակվում և սկսում եմ նրանից ավելի եռանդով հորանջել:

— Բավական է հորանջես,— զգուշացրեց ինձ Ամենաօրինակելի տղան, բայց այնպիսի բարձր ձայնով, որ ետևիս նստածներն անգամ դադարեցրին իրենց քնաբեր շշուկներն ու նորից աշխուժացան:

Ուսուցչուհին առանց դասն ընդհատելու, հանդիմանող հայացքով նայեց ինձ:

Բայց արի տես, որ ետևիս նստածներից ստացած իմ այդ հորանջելու վարակը արագորեն փոխանցվեց Ամենաօրինակելի տղային: Նա սկսեց այնպիսի ջա-



նասիրությամբ բացուխուփ անել բերանը, որ կարծես միանգամից ուզում էր չափել առաստաղի բարձրությունը։

Ա՜յ քեզ խայտառակություն, մտածում եմ ես։ Իսկ եթե հանկարծ ուսուցչուհին նկատի՞։ Ես դեռ ոչինչ, բայց չէ՞ որ նա Աշխարհի ամենաօրինակելի տղան է։ Այստեղ գլխումս մի օգտակար միտք շողաց։ Հիշեցի, որ այդպիսի դեպքերում հարկավոր է հանկարծակիի բերել դիմացինին, և նա անմիջապես կդադարի հորանջել։ Այս մտքից ոգևորված, առանց ժամանակ կորցնելու, ես դիմեցի այդ հրաշալի միջոցին։ Այն պահին, երբ նա հառաչանքի նման ինչ-որ երկարատև հնչյուն արձակելով, բերանը բաց արեց պատռվելու չափ, հայացքս չհեռացնելով ուսուցչուհու դեմքից, մատս արագ տարա ինձնից քիչ հեռու սևին տվող մութ խոռոչը։ Ամենաօրինակելի տղան, հանկարծակիի եկած, միանգամից փակեց բերանը և իմ խեղճ մատը թողեց իր սրածայր ատամների տակ։ Ցավից ես այնպես ոռնացի, որ ամբողջ դասարանը ցնցվեց, իսկ իմ ետևում նստած տղաները բռնկվեցին ախորժալուր մի քրքիջով։

— Ի՞նչ պատահեց,— ցավատանջ դեմքիս նայելով, զարմացած հարցրեց ուսուցչուհին։

Ամենաօրինակելի տղան իսկույն ոտքի թռավ։

— Սա իր մատը բերանս խոթեց,— ասաց նա բարկությունից տնքալով։



— Իսկ ի՞նչ գործ ուներ նրա մատը քո բերանում։

Դասարանը փոթկաց, իսկ ետևիս նստարանի անհոգները անզուսպ ծիծաղից սկսեցին ծնկները ծեծել։

— Այդ իրե՛ն հարցրեք,— վրդովված ասաց Օրինակելի տղան ու ամենայն քաղաքավարությամբ ավելացրեց.— Թույլ տվեք նստել...

— Նստի՛ր,— ասաց ուսուցչուհին և դառնալով ինձ, ավելացրեց.— Ասա՛, խնդրեմ, ո՞վ է Տորիչելլին։

Ես սրտապնդած ոտքի ելա։

— Իտալացի նշանավոր գիտնական։

— Այդպե՛ս,— ծոր տվեց ուսուցչուհին։— Իսկ ի՞նչ է հայտնագործել։

— Դատարկություն,— ամենայն վստահությամբ պատասխանեցի ես։

Դասարանը քրքջաց, իսկ ետևիս երկու տղաները ուղղակի նվաղեցին։ Մի՞թե սխալվել եմ, մտածում եմ ես։ Եթե այդպես է, ապա ինչո՞ւ էր իմ սիրելի մեծ եղբայրը տեղի-անտեղի մատով կտտացնում ճակատիս ու ասում. «Ահա քեզ տորիչելլյան դատարկություն»։ Եվ հետո ես ի՞նչ մեղավոր եմ, եթե այդ Տորիչելլի կոչվող գիտնականը ավելի կարևոր բաները թողած, դատարկություն է հայտնագործել։

— Ի՞նչ է պատահել։ Դու այսօր բոլորովին չես հետաքրքրվում դասով։ Կամ խցկվում ես մարդկանց բերանը և կամ շարունակ դուրս ես նայում։ Չէ՛, ինչպես տեսնում եմ, լուսամուտը քեզ հանգիստ չի տալիս,— ասաց ուսուցչուհին և ինձ իմ տեղից հանելով, նստեցրեց շեկլիկ հյուսերով աղջկա կողքին։ Նույնպիսի տեղափոխություն կատարվեց և ծիծաղող տղաների հետ։ Նրանցից մեկը փոխադրվեց ուրիշ շարք, այնտեղ նստածը եկավ սրա տեղը։ Երբ դասարանում բավականաչափ կարգ ու կանոն հաստատվեց, ուսուցչուհին շարունակեց ընդհատված դասը։

Դրանից հետո նոր միայն իմացա, թե ինչ հայտնագործություն է կատարել Տորիչելլին և ինչպիսի դատարկություն եմ ես։

* * *

Եվ ահա, ես նստում եմ հաստ, անթափանց պատի մոտ։ Իսկ ետևում իմ սիրելի նստարանն է՝ մեծ, թափանցիկ լուսամուտով, բետոնե սալեր բարձրացնող երկաթե կռունկով և Աշխարհի ամենաօրինակելի տղայով։

Բայց այս բոլորից հետո մեր դասարանում մի ուրիշ փոփոխություն էլ կատարվեց։ Ամենասովորական ձևով դասարան մտավ ուսմասվարը, իսկ նրա հետ՝ ակնոցավոր մի աղջիկ։ Նրան տեսնելուն պես՝ քիչ մնաց հրճվանքից ճչայի։ Դա այն աղջիկն էր, որի հետ ծանոթացել էի ամռանը՝ ճամբարում։ Թեպետ նրա քիթը մի փոքր կճատ էր և խոշորացույցի պես հաստ ապակիներ ունեցող ակնոց էր կրում, այնուամենայնիվ նա ինձ համար ամենագեղեցիկ և ամենա-

հրաշալի աղջիկն էր ամբողջ աշխարհում:

Ուսմասվարն ասաց, որ սրանից հետո նա սովորելու է մեր դպրոցում և նստեցնելով նրան իմ նախկին տեղը՝ Օրինակելի տղայի կողքին, դուրս գնաց:

— Բարև՛,— ետևից շշնջաց Ամենահրաշալի աղջիկը:

— Բարև՛,— առանց շրջվելու պատասխանեցի ես:

— Սա ձեր դասարա՞նն է:

Նա, իհարկե, շատ լավ տեսնում էր, որ մեր դասարանն է, բայց էլի հարցնում է, հենց այնպես՝ հարցնելու համար: Ես պատրաստվում եմ պատասխանել նրան սիրալիր ու մտերմորեն, բայց չգիտեմ ինչու, էլի առաջվա պես կոշտ ու կոպիտ ասում եմ.

— Իսկ ի՞նչ է, չե՞ս տեսնում...

Նա այլևս ոչինչ չի հարցնում: Ես էլ ոչինչ չեմ ասում: Իհարկե, անմիջապես զղջում եմ կոպիտ պատասխանելու համար և ուզում եմ, որ նա նորից որևէ բան հարցնի, իսկ ես պատասխանեմ նրան աշխարհի ամենագեղեցիկ հրաշալի խոսքերով. «Պատրաստ եմ քեզ համար խաշվել եռացած ջրի մեջ»: Կամ ավելի սքանչելի մի բան. «Եթե ուզես, կուտեմ ամենափշոտ ձուկը. առանց փշերից մեկն հանելու»: Բայց այդ բոլորից ոչ մեկն էլ չեմ կարողանում ասել: Նույնիսկ մարդավայել բարևել չեմ կարողանում: Իսկ Ամենաօրինակելի տղան...





— Բարի լո՛ւյս,— առավոտյան դասարան մտնելով՝ քնքշությամբ ասում է նա:

— Բարի լո՛ւյս,— պատասխանում է աղջիկը:

— Թույլ տվեք նստել,— ասում է Ամենաօրինակելի տղան:

— Խնդրեմ,— պատասխանում է Հրաշալի աղջիկը:

— Շնորհակալություն,— ասում է տղան ու նըստում:

Ես տեսնում եմ, թե ինչպես են փայլում աղջկա աչքերը, երբ Օրինակելի տղան ամեն անգամ այդպես բարեկիրթ ու քաղաքավարի խոսում է նրա հետ: Եվ ինձ թվում է նրա համար այժմ ամբողջ աշխարհում չկա ավելի լավ տեղ, քան իմ սիրելի նստարանն է իր մեծ, թափանցիկ պատուհանով և Ամենաօրինակելի տղայով:

* * *

Եվ այսպես նրանք միշտ միասին են, միասին են դպրոց գալիս և միասին էլ տուն են վերադառնում: Պատահում է, որ դասերից հետո ես էլ եմ միանում նրանց: Ճանապարհին Ամենահրաշալի աղջիկը սկսում է ծիծաղելի բաներ պատմել: Նա ճամբարում էլ այդպես էր. շարունակ ծիծաղելի ու հետաքրքիր պատմություններ էր պատմում: Չէ՞ որ նա ամենախելոք և ամենաուրախ աղջիկն էր ամբողջ աշխարհում:

Եվ ահա, նա պատմում է, իսկ ես եռանդով քըրքըջում եմ:

— Բավական է, այդ ինչպե՞ս ես հռհռում,— ասում է Ամենաօրինակելի տղան:

— Այխր շատ ծիծաղելի պատմություն է,— ասում եմ ես:

— Դու էլ մի քիչ քաղաքավարի՛ հռհռա,— զգուշացնում է ինձ Օրինակելի տղան:

Դա լավ է, որ նա ժամանակին զգուշացնում է, և ես աշխատում եմ մի փոքր ավելի բարեկիրթ ու քաղաքավարի հռհռալ: Իհարկե, չգիտեմ, թե այդ ինչպես է լինում, բայց այնուամենայնիվ աշխատում եմ օրինակ վերցնել Ամենաօրինակելի տղայից, որն ամբողջ ճանապարհին քայլում է մի տեսակ զգույշ, ձգված ու հանդիսավոր:

Մենք նոր էինք թեքվել մոտակա նրբանցքը, երբ անկյունում կանգնած մի տղա, նետեց.

— Հե՜յ դուք, աքլորնե՛ր, մի սրա՜նց տեսեք...

Ես հանկարծակիի եկած կանգ առա, բայց տեսնելով, որ Օրինակելի տղան ու աղջիկը ուշադրություն չդարձնելով, շարունակեցին ճանապարհը, ես էլ արհամարհանքով շրջեցի դեմքս ու գնացի նրանց հետ:

Տղան, որ, չգիտես ինչու, անպայման ուզում էր կռիվ բորբոքել, այս անգամ էլ դարձավ Ամենահրաշալի աղջկան.

— Հե՜յ դու, չորսաչքանի՛, քի՞չ կոտրատվիր, թե չէ խոշորացույցներդ կջարդվեն:

Այստեղ արդեն աղջիկը միանգամից ցնցվեց, մի տեսակ շփոթվեց ու կարմրեց:

Ես այլևս չկարողացա համբերել և շրթունքս ատամներիս տակ սեղմած, մոտեցա տղային:

— Նա պատրաստվում է կռիվ սարքել, գնանք,— ասաց Օրինակելի տղան, քաշելով Ամենահրաշալի աղջկա ձեռքից:

Ես, իհարկե, բոլորովին էլ մտադրություն չունեի փողոցի մեջ կռիվ սարքել: Ես մոտեցա տղային և ամենայն քաղաքավարությամբ ասացի.

— Ես հիմա քո մռութի ճանճերը կքշեմ:

Փողոցի տղան այս խոսքի վրա միանգամից ձգվեց տեղում: Երևի նա իսկույն գլխի ընկավ, թե ինչ է նշանակում դա, բայց իբր կարևորություն չտալով, ոտքը գետնին խփելով ասաց.

— Ուրիշ ի՞նչ գիտես, ճանճեր քշելուց բացի...

Այստեղ արդեն գետինը դողաց ոտքերիս տակ, ավելի ճիշտ, ոտքերս դողացին գետնի վրա: Միշտ այդպես է, հենց սկսում եմ բարկանալ, ոտքերս այնպես են դողում, այնպե՜ս են դողում, որ կարծես ուր որ է պիտի ծալվեն: Ես չզգացի, թե ինչպես բռունցքըս ինքն իրեն սեղմվեց ու արագ մղվեց դեպի փողոցի տղայի մռութը: Մի քանի րոպե հետո, մենք արդեն եռանդով թավալվում էինք փոշու մեջ:

Երբ ես վեր կացա, փողոցի տղան իսկույն արանքը ճղեց:

— Վերջը կռիվ սարքեցիր,— ասաց Ամենաօրինակելի տղան:— Դու մոռացար, որ մեզ հետ աղջիկ կա:

Այս խոսքի վրա Ամենահրաշալի աղջիկը նայեց Օրինակելի տղային, նայեց ինձ, կարծես առաջին անգամ էր տեսնում, ապա լուռ ու մտազբաղ քայլեց առաջ:

Ախր ինչո՞ւ կռվի բռնվեցի փողոցի տղայի հետ: Չէ՞ որ որոշել էի ամբողջ ճանապարհին ինձ պահել այնպես, ինչպես Ամենաօրինակելի տղան, բայց... Իմ արարքը երևի վերջնականապես հիասթափեցրեց Ամենահրաշալի աղջկան, թե չէ ինչո՞ւ է նա այդպես լուռ քայլում ու ոչինչ չի հարցնում: Չէ՛, անպայման ես նրա աչքին հիմա այնպես փոքր եմ երևում, գնդասեղի պես աննշան ու չնչին:

Բայց ա՜յ քեզ բան...

Փողոցի խաչմերուկում, որտեղից մենք արդեն պիտի բաժանվեինք, Ամենահրաշալի աղջիկը դարձավ ինձ ու մի հրաշալի ժպիտով ասաց.

— Այսօր հեռուստացույցով «Երկկենցաղ մարդն» են ցուցադրելու: Կգա՞ս մեր տուն միասին նայենք:

— Կգամ,— ուրախ ասացի ես :

Այստեղ Աշխարհի ամենաօրինակելի տղան, չգիտեմ ինչու, շուռ եկավ և առանց որևէ բան ասելու, գնաց:



Եվ այսպես, Աշխարհի ամենաօրինակելի տղան հեռացավ մեզանից: Չգիտեմ ինչու, նա այլևս չի ուզում ընկերություն անել մեզ հետ: Նա հիմա ոչ ոքի հետ ընկերություն չի անում: Եվ հիմա մենք, ես և Ամենահրաշալի աղջիկը, միասին ենք դպրոց գնում, միասին տուն վերադառնում: Բայց ես այնպես կուզեի, որ Օրինակելի տղան էլ մեզ հետ լիներ: Նա հիմա այնպես մենակ է, թվում է, նա հիմա ամենամենակ մարդն է ամբողջ աշխարհում: Իսկ ես ուզում եմ, որ նա մենակ չլինի, որ մենք միասին դպրոց գնանք և միասին նայենք աշխարհի բոլոր հետաքրքիր կինոֆիլմերը:

Եվ ահա մի օր, դասերից հետո, երբ ես ու Ամենահրաշալի աղջիկը սովորականի նման կատակելով տուն էինք վերադառնում, հևիհև մեզ մոտեցավ Օրինակելի տղան և մի տեսակ ընկճված ասաց.

— Թույլ կտա՞ք ընկերություն անել ձեզ հետ:

— Ընկերությունը լավ բան է,— ասաց Ամենահրաշալի աղջիկը ու նայեց ինձ:

— Դրա համար թույլտվություն պետք չէ, արա՛ ու վերջ,— ուրախ ճչացի ես:

— Շնորհակալություն,— ասաց Աշխարհի ամենաօրինակելի տղան:

— Խնդրեմ,— ասացի ես:





# ԲԱՑ ԵՐԿՆՔԻ ՏԱԿ ՀԻՆ ԼԵՌՆԵՐ

ՀՐԱՆՏ ՄԱԹԵՎՈՍՅԱՆ

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Գերմանուհու հետ մենք գնացինք Գառնի, և նա շրթունքները կլորացրեց՝ «Օ՜», գնացինք Գեղարդի վանք, գնացինք Սևան, և գերմանուհին լողացավ, գնացինք Զվարթնոցի ավերակներ: Գերմանուհին քայլում էր, և մենք նրա շուրջը վազվզում էինք, գերմանուհին շրջվում էր, և հայ տղաների մեր խումբը նրա հետ շրջվում էր: Գերմանուհուն ես տարա պատկերասրահ, տարա Հովհաննես Թումանյանի տունթանգարան, տարա Հին ձեռագրերի մատենադարան; և գերմանուհին ծամոնը թքեց ու ասաց, որ ինքը քաղցած է: Մենք գնացինք Բարձունքի ռեստորանը, խորոված կերանք և կոնյակ խմեցինք: Ռեհանը գերմանուհուն դուր էր եկել, բայց ռեստորանում հիմա ռեհան չկար, և մենք գնացինք իմ հորաքրոջ որդու Նորքի այգին: Թարխունն ավելի դուր եկավ, և տնից լավաշ ու ձու բերեցին, հետո պանիր բերեցին, հետո երշիկ բերեցին, հետո սեղան բացեցին այն ծիրանու տակ, որ Բեռլինում զոհվելուց առաջ տնկել էր այդ այգու հին տերը, և գերմանուհին ասաց, որ հայերը շատ հյուրընկալ ժողովուրդ են, և մենք մեզ հյուրասեր ու գեղեցիկ զգացինք: Հետո մենք մաքուր առավոտի միջով իջանք քաղաք, Այգեստանով, լավաշի փռան մոտով, Սայաթ-Նովայի մաքուր փողոցով, անցանք Գետառը, մտանք Ալավերդյան ու թեքվեցինք Թումանյան, որպեսզի ես նրան տանեմ գեղարվեստական իրերի՝ արծաթ գոտիների, արծաթ ականջօղերի, արծաթ ապարանջանների, արծաթ ըմպանակների սրահ... Անկյունադարձում՝ Խոցերի հիվանդանոցի քարե սանդուղքին գյուղացի մի կին էր նստել, ննջում էր, և ես իմ գերմանուհուն հրեցի դեպի մյուս մայթը: Թևանցուկ՝ ուսով ու արմունկով հրեցի դեպի մյուս մայթը, և նա ասաց.

— Դու գյուղացի՞ ես:

— No,— ասացի ես,— ո՛չ:

— Երևանցի՞ ես:

— Yes,— ասացի ես,— Да! Երևանցի:

Խոցերի հիվանդանոցի դռան տակ, քարե սանդուղքին, որ հենց մայթի վրա էր, գյուղացի մի կին էր ննջում: Նրա գոգին վանդականախշ շալի մի կապոց կար: Շալը գոնե արձակեր, գցեր ուսերին, գոնե կապոցին նստեր, թե չէ ամբողջ գիշերն այդպես՝ սառը քարին:

Արծաթ իրերի տաղավարը դեռ փակ էր:

— Խոլոդնո,— ասաց գերմանուհին,— ցուրտ է, քունս տանում է:

— Որովհետև կոնյակը քո մեջ արդեն հանգել է:

Իմ բաճկոնն իր ուսերին՝ Աբովյան փողոցով մենք իջանք հրապարակ, շատրվանի մոտ նա նորից սըրսըփաց և ասաց, որ ուզում է քնել: Հյուրանոցի դռանը ես ասացի.

— Հյուրանոցը պատերազմից հետո կառուցվեց:

— Այո՞,— նա զարմացավ առանց զարմանքի, որովհետև քունը տանում էր, չէր ուզում քունը փախցընել:— Պատերազմն ինձանից առաջ է եղել,— հորանջեց նա,— պատերազմը չեմ տեսել: Դու տեսե՞լ ես,— առանց հարցի հարցրեց նա:

Ես չուզեցի նրա քունը փախցնել:

— Չեմ տեսել,—ասացի ես:

Ես Աբովյանով բարձրացա, Թումանյան փողոցով թեքվեցի, Թումանյան-Նալբանդյան խաչմերուկն անցա ու կանգ առա. քնատ այդ կինն ինձ չէր տեսել, կարելի էր չգնալ: Ես քնատ էի, գուցե ես էի սխալ

Սկիզբը՝ № 10 և 11-ում:

տեսել, գուցե ոչ մի կին էլ չկար: Ես որոշեցի չգնալ, բայց գնացի, և քարե սանդուղքին ոչ ոք չկար: Հիմա կարելի էր գնալ և քնի մեջ անգամ զգալ, որ աշխարհը շռայլորեն, նվերի պես է գեղեցիկ և քեզ համար է գեղեցիկ, բայց շենքի անկյունադարձում ես բախվեցի այդ կնոջն ու մի տղամարդու: Ծանր ոչխարահոտը խփեց քթիս:

— Զարի՞կ, Զավե՞ն, դո՞ւ ինչ բանի ես էստեղ, Թի՛:

Ճանաչելու հետ և ճանաչելուց էլ առաջ նրանք մի վայրկյան ժպտացին, նրանք մի քիչ ուրախացան այն բանի համար, որ իրենք մի օգնական ևս ունեցան, և նա իրենց օգնելու է այն գործում, որի մեջ իրենք էին:

— Բա շնե՞րն ուր են:

— Շները...— Նրանք նայեցին միմյանց, ապա կինը վիզը ծռեց ու կախվեց իմ հայացքից.— Վանուն բերել ենք:

— Վանուն բերել ենք,— կրկնեց Զավենը:

— Քու Վանուն բերել ենք,— ասաց կինը:— Որ քեզ տեսնի՝ շատ կուրախանա:

— Շները կան,— ասաց Զավենը:— Շները սարում են, Վանուն բերել ենք:

— Անունդ տվել ենք ու բերել,— ասաց կինը:

— Ճիշտ է ասում, անունդ տվել ենք ու բերել,— ասաց Զավենը:

— Գնացքում քու մասին էր խոսում, ասում էր՝ պրոֆեսորը մեր բանաստեղծի ընկերը կլինի,— ասաց կինը:

Նրանք այնքան էին հոգնած, որ չէին կարողանում սուտը ճշտի նման ասել: Նրանք խնդրում էին և չէին հավատում, որովհետև իրենց անարժան էին համարում թանկ, թաքուն, հրաշագործ դեղերին, (կաթեցնում են բամբակին ու հպում մեռնողի բերանին, և դու աչքերդ տրորելով վրա ես նստում «շորերս բերեք»), անարժան էին համարում պրոֆեսորական ճակատների լուսավոր բռնկումներին և սպիտակ հագած գթության քույրերի փաղաքուշ հայացքներին: Անարժան էին համարում կամ կարծում էին՝ մենք չենք իրենց արժանի համարում մեր բուժիչ գյուտերի բռնկումներին և մեր թաքուն դեղերը պահում ենք մեզ համար: Նրանք կարծում էին՝ իրենց մասին մենք այդպես ենք մտածում, որովհետև իրենց սարերում մեր մասին իրենք այդպես են մտածում: Որովհետև աշխատավոր են, դժվար են ստեղծում, իսկ մենք հեշտ ենք ուտում: Նրանց համար հիվանդությունն անորոշ էր, պրոֆեսորական կարեկցանքի ակունքն անհայտ էր (եսիմ գլուխ կդնի՞, թե չի դնի), պրոֆեսորների կարողության չափն անորոշ էր և դարձյալ անհայտ էր քաղաքաբնակների մեր սրտում հարգանքն իրենց՝ հովիվների (կարող են, բայց կանե՞ն): Եվ մնում էր միայն խնդրելը: Այդ ամբողջ անորոշի դեմ խնդրելը, դարձյալ խնդրելը, խեղճ-խեղճ խնդրելը, անընդհատ խնդրելը, որպեսզի այդ լատիներեն բառերի տակից, այդ ակնոցների ետևից, այդ թանձր անհասկանալիության տակերից վերջապես դուրս քաշվեր այն, ինչը որ իրենք միանգամից, սուփրա գցելու պես, կդնեին քաղաքաբնակիդ դեմ, եթե դու սարերում իրենց մոտ լինեիր:

— Ռուսերեն էր խոսում,— վիզը ծուռ՝ ասաց կինը:

— Իրենց մեջ ռուսերեն խոսում էին,— ասաց Զավենը:

— Մեզ դուրս արին, իրենց մեջ իրենք ռուսերեն էին խոսում:

— Հինգերորդից հանեցին, դրկեցին ոչխարը, ռուսերեն որտեղի՞ց էի սովորելու,— ասաց Զավենը:

— Ջուր կուզի՝ չեն հասկանա,— վիզը ծուռ՝ խեղճ-խեղճ երեսիս նայեց կինը:

— Համարյա թե ընկեր էինք, չես հիշո՞ւմ, էն է ընկեր էինք, բայց թե իմ ռուսերենը կիսատ մնաց:

Նրանք մտածում էին, որ անհասկանալի լեզվի այդ պատի ետևում շատ կարևոր մի բան այնպես չի լինում, ինչպես որ լինելու էր: Հարկավոր էր, որ մեկն այդ պատի ետևում այդ լատիներենի, ռուսերենի, այդ ակնոցների, այդ անկարեկցության մեջ լիներ, բայց լիներ իրենցից՝ գյուղացիներից:

— Տեսնենք,— ասացի ես, և նրանք մտածեցին, որ ես խուսափում եմ:

— Ինչ որ պետք է՝ կարվի,— ասացի ես, և նրանց համար դա ռուսերեն հնչեց:

— Գիշերը քնել ե՞ք,— հարցրի ես, և նրանք հասկացան, որ ես իրենցից եմ:— Գնանք տուն, թեյ խմենք, հանգստանանք, գիշերը չենք քնել,— ասացի ես, և նրանք տեսան, որ իրենց պես գիշերը ես էլ չեմ քնել, որ քաղաքում իրենք տուն ունեն, քաղաքաբնակ են, այլ ոչ թե հիվանդանոցի դռանը վիզները թեքած քնատներ:— Հետո կգանք ու... լավ կլինի,— հորանջեցի ես:— Գիշերը չեմ քնել:

— Ջուր կուզի՝ չեն հասկանա,— շշնջաց կինը: Չհամարձակվեց խնդրել և չհամարձակվեց առարկել, միայն շշնջաց:

— Ռուսերեն չգիտի,— ասաց Զավենը:

— Իրենք հայերեն գիտեն,— ասացի ես,— իրենք հո ռո՞ւս չեն, իրենք հասկանում են հայերեն: Գնանք լողացեք, մաքրվեք, թեյ խմեք, հանգստանանք,— ասացի ես,— գիշերը չենք քնել: Գնանք լողացեք:

Իրենց ոչխարահոտի մեջ նրանք կծկվեցին, և այդ պահին իմ բաճկոնի բույրն ինձ դուր եկավ: Նրանք կարծես թե համաձայն էին գալ, քնել, մոռանալ, տաքանալ, նրանք սակայն ոտքները դարձյալ կախ էին գցում: Նրանց այնպես էր թվում, թե անհայտության պատի ետևում հրեշը մարդ է խժռում և մարդուն օգնող չկա: Նրանք չգիտեին, թե ինչքան դուրեկան է, երբ քո բաճկոնը եղել է մեկի ուսերին և նրա բույրը բերել է իր հետ, և դու այդ բույրի մեջ ես, և քեզ համար անտանելի է ծանր ոչխարահոտը:

— Եթե հարկավոր է,— չոր շրթունքները շարժեց Զավենը, և ես հասկացա, որ խոսքը փողի մասին է: Փողը նրանք դժվարությամբ են վաստակում և նրանց թվում է, թե փողն արդեն ամեն ինչ է:— Եթե պետք է, ինչքան որ պահանջվի՝ բերել ենք,— տընքաց Զավենը:— Թանկ դեղ է, ուրիշ տեղից ուրիշ պրոֆեսոր կանչել է, եսի՞մ, հազար ու մի հարկավորություն:

— Սիրտը ջուր կուզի՝ կամաչի,— ասաց կինը։

— Վանին կամաչի՞,— ժպտացի ես,— Թի…

— Հին Վանին չի,— ասաց Զավենը,— համ էլ, դե սարերն՝ ուրիշ, էստեղ՝ ուրիշ։ Մաշվել, հատել է խեղճ Վանին։

— Սիրտը ջուր կուզի, ինքը չի կարող ուզել՝ չեն հասկանա,— ասաց կինը։

— Ասատո՞ւր, հե՞յ,— հիշեցրի ես։— Դու ոնց էիր ծիծաղո՜ւմ. «Թի՛-թի՛-թի՛»։

Չոր շրթունքները նա անձայն շարժեց, վիզը թեքեց և ոտքից-ոտք փոխվեց։ Նա բան չասաց։ Մենք կաշկանդված ու լուռ էինք և ոչինչ չէր պատահում, և այդ ժամանակ դողդոջ ու հարևան խաչմերուկը կտրեց անցավ պայծառ ավտոբուսը։ Ավտոբուսն անցավ, և մայթը լցվեց աղջիկներով։ Եվ դարձյալ այնպես էր, ինչպես որ եղել էր երբևէ, ես կարծես թե գյուղ էի փախչում և կարծես թե ինձ դարձյալ բռնել էին և դարձյալ աչքս էին խոթում, և դարձյալ քիթս էին խոթում, և բերանս էին խոթում քաղաքի ամբողջ գեղեցկությունը, և դա հաճելի ու տհաճ էր սրտախառնուքից հետո փսխելու պես։ Աղջիկները եկան, գեղեցկացան, պայծառացան, խոշորացան, բույրավորվեցին, (և գյուղացիներս սեղմվեցինք հիվանդանոցի պատին), դարձան ինստիտուտի ուսանողուհիներ իրենց դասախոսի ղեկավարությամբ և մտան հիվանդանոց։ Նրանք այնքան լավն էին, որ մեզ թվաց, թե մենք էլ լավն ենք։ Մենք պատից հեռացանք ու ազատ շունչ քաշեցինք, և ինձ թվաց, թե այդ հիվանդանոցում որևէ լավ բան կա, թե արբանյակները լողում են և նրանց մեծ ազատության տակ այդ հիվանդությունները մանրիկ բաներ են։

«Աշխարհը մեծ, պայծառ, Նորքի արևոտ այգիներից մինչև…»— ես ներս մտա, և աղջիկները հանվում-հագնվում էին։ Հերակալը շրթունքների մեջ՝ նրանցից մեկը ծոծրակին շտկում էր դարչնագույն ծանր մազերը և խաժ աչքերով նայում էր ինձ։ Նայում էր ինձ, բայց չէր տեսնում, այլ հավաքում էր ծանր մազերը։ Սպիտակ մաքուր խալաթները նրանք կոճկեցին, հագան օսլայած սպիտակ թասակները, քունքի մի թել մազն անցըրին ականջի ետևը, և հիմա պատրաստ էին դասախոսի հետ բարձրանալ, կանգնել հիվանդների դեմ։ Պատրաստ էին, բայց դասախոսը չէր առաջնորդում, և նրանք լռջանում ու ավելի էին լրջանում, բայց այդպես էլ չէին կարողանում լրջանալ, որովհետև հրճվանքը ծղրտում էր նրանց մեջ։ Մարմարե հատակը փայլում էր նեոնային խաղաղ լույսի տակ, շատ առողջ ֆիկուսի մուգ-կանաչ տերևները խնամքով սրբված էին և մաքուր փայլ էին տալիս («ի վսյո-ժե բլեսկ բըլ մյորտվի», դրսի գյուղացիներից թաքուն և իմ միջի գյուղացուց թաքուն մտածեցի ես), և այդ լռության մեջ ուսանողուհիների սպիտակ խումբը լրջանում էր։ Հարկավոր էր հիվանդների մոտ բարձրացնել ոչ թե մաքուր առավոտի, գերմանուհու թեթև բույրի և արևոտ այգիների քո հրճվանքը, այլ առողջ, խելացի, բանիմաց և ոչ տխուր մարդու քո բարկությունն այդ անպիտան ցավի դեմ։

*(Շարունակելի)*



# ԶՐՈՒՅՑ ԳՈՒՅՆԵՐԻ ՀԵՏ

ԳԵՎՈՐԳ ԽԱՉԱՏՈՒՐ

Ես մեր իմացած գույներին բոլոր
Ձմռանն ավելի շատ եմ կարոտում
Եվ զրույցի եմ նստում նրանց հետ:
Ճերմակ գույնին ես ասում եմ՝ ճերմա՛կ,
Չնայած շուրջս համատարած ձյուն,
Ու սառցակալած դաշտավայրեր են,
Բայց ամենից շատ կարոտում եմ քեզ:
Գուցե հենց նրա համար, որ հաճախ
Մեր ամենօրյա խոսակցության մեջ
Համարժեքորեն փոխարինում ես
Ճշմարտություն ու մաքրություն բառին:
Եվ ճերմակ գույնը ինձ համար իսկույն
Դառնում է ճերմակ մի թրաշուշան...

Կանաչ գույնին ես ասում եմ՝ կանա՛չ,
Չնայած քեզ հետ հոմանիշներ են
Թերահասը և խակը անախորժ,
Բայց գիտեմ վաղուց,
Որ գարուն է քո անունն իսկական:
Եվ կանաչ գույնը ինձ համար իսկույն
Դառնում է դափնու կանաչ մի տերև...

Կարմիր գույնին ես ասում եմ՝ կարմի՛ր,
Դու նախ և առաջ եղել ես կրակ,
Եվ չնայած որ մարդիկ շատ հաճախ
Պատուհասին ու փորձանքին էլ են
Անվանում կրակ,
Բայց դու մեզ համար գույնն ես կակաչի,
Եվ հավերժական այն սուրբ կրակի,
Որը այրվում է ի հիշատակ մեր նահատակների:
Եվ կարմիր գույնը սեղանիս վրա
Դառնում է իսկույն հրավառ մի ջահ...

Դեղին գույնին ես ասում եմ՝ դեղի՛ն,
Չնայած քո գույնն ունի և լեղին,
Սակայն մենք հաճախ քեզ անվանում ենք
Դեղձան կամ խարտյաշ,
Եվ դեղին գույնը ինձ համար իսկույն
Մի դեղձանիկ է դառնում դեղնաթև...

Կապույտ գույնին ես ասում եմ՝ կապո՛ւյտ,
Դու նախնադարյան ժամանակներում
Կարմիր գույնից էլ եղել ես կարմիր,
Բայց տառապանքի ու ցավի պահին
Լերդացել է մեր արյունը կարմիր,
Եվ դու ծնվել ես առաջին անգամ



# ՈՐՏԵ՞Ղ ԵՆ ՌԱՅԽՍՏԱԳԻ

Բեռլինն արդեն գրավված էր, մեր տանկերը շրջում էին քաղաքում: Մնում էր միայն հիտլերականներին դուրս քշել վերջին թաքստոցից՝ ռայխստագից:

Իլյա Սյանովի գումարտակը առաջիններից մեկն էր, որ խուժեց շենքի ներսը: Մարտերը մղվում էին յուրաքանչյուր հարկի, յուրաքանչյուր աստիճանի համար: Շուտով պարզվեց, որ սենյակները փակ են: Ի՞նչ անել: Կոտրել դռները: Բայց ի՞նչ է թաքնված դրանց հետևում: Ռումբե՞ր: Դավա՞ն: Մոտ երկու հազար էսէսականների էին ուղարկել ռայխստագի պաշտպանության համար: Այդ տեղեկությունը հաղորդել էր գերի ընկած գերմանական գնդապետը, երբ սովետական մարտիկներին հանձնեց ռայխստագի նիկելապատ բանալիները: Դրանց թիվը հասնում էր մի քանի տասնյակի և յուրաքանչյուրը համարակալված էր: Մեկը մյուսի ետևից սենյակները բացելով, մեր զինվորները նռնակներ էին նետում այնտեղ թաքնված հիտլերականների վրա:

Որտե՞ղ են այժմ այդ բանալիները: Մի անգամ չէ, որ այսպիսի հարց են տվել ռայխստագի վրա գրոհած 150-րդ հրաձգային դիվիզիայի վետերաններին: Ի պատասխան նրանք միշտ ուսերն են թոթվում. մի՞թե բանալիների մասին մտածելու ժամանակ կար: Բայց, այնուամենայնիվ...

1962 թվականին Կուրսկի մարզի բնակիչ, պատերազմի վետերան Մ. Ի. Կոզլովսկին թանգարանին հանձնեց 54 համարը կրող բանալին, որը նա պահել էր ի հիշատակ ռայխստագի վրա գրոհելիս

Մեր երակներում...
Դրա համար էլ տառապանքը մեր
Մենք մոռանալու համար կապույտ ենք
Կոչել երկինքը, լույսը, թախիծը,
Հեռուն, աստղերի ցոլքը մթան մեջ,
Արտացոլանքը անհատակ ծովի։
Եվ կապույտ գույնը ինձ համար իսկույն
Մի մանուշակ է դառնում երկնագույն...

Իսկ սև գույնին ես ասում եմ՝ սև՛,
Չեմ ուզում բնավ քեզ համար գտնել
Ուրիշ ինչ-որ մի բարեհունչ անուն,
Որովհետև դու,
Աշխարհ գալու քո առաջին օրից,
Ժանաչվել ես միշտ
Որպես ցավի ու անհաջողության
Չար խորհրդանիշ...

*Նկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ*



# ԲԱ՛ՆԱԼԻՆԵՐԸ

գոհված ընկերոջ։ Ռայխստագի բանալիները փնտրել սկսեցին նաև դպրոցականները։

Սովետական Միության հերոս Իլյա Սյանովը պատմեց, որ 1945 թվականի մայիսին գնդի որդի Ժորա Արտեմենկոյի մոտ նա տեսել է ռայխստագի շքամուտքի բանալին՝ ամենամեծը բոլոր բանալիներից։ Այն հարցին, թե ինչպես է այդ բանալին իր ձեռքն ընկել, Ժորան ամենայն լրջությամբ հայտարարել է. «Ես այն խլեցի Հիտլերից»։ Որտե՞ղ է այժմ գնդի որդին։ Նրա մոտ արդյո՞ք մնացել է այդ բանալին։

Գուցե պատանի հետախույզներին հաջողվի՝ գտնել գնդի որդուն և ռայխստագի բանալին։

*ՅՈւ. ՓԵՆԿՈՎ*

# ՀՐԱՉՅԱ ԱՃԱՌՅԱՆԻ ՀԵՏ

*ԳԱՌՆԻԿ ԱՍՏՎԱԾԱՏՐՅԱՆ*

*Ծնված արհեստավորի ընտանիքում, մեծացած չարքաշ կյանքով ու ծանր աշխատանքով, նա ամենաանկեղծ զգացումներով կապված էր աշխատավորական խավերի հետ, հոգատար՝ կարիքավորների նկատմամբ։ Օգնել է ում ինչով կարողացել է։ 20-ական թվականների վերջերին Երևանում Խաչիկ անունով մի մուրացիկ է եղել։ Սովորություն է ունեցել շրջելու Աբովյան փողոցում և փող խնդրելու։ Աճառյանը մի օր հրավիրում է նրան իր սենյակը, հետաքրքրվում նրա անցյալով, ներկայով, հարցնում է, թե մուրացկանությամբ որքա՞ն փող է վաստակում։ Իմանում է, որ հազիվ օրվա հացի դրամ է շահում, որը չէր անցնում ամսական 30 ռուբլուց։*

*— Խաչի՛կ եղբայր,— ասել է նա,— հայ ժողովուրդը աշխատասեր ժողովուրդ է, մուրացկանությունը ամոթաբեր է, թո՛ղ այդ արհեստը, ես քեզ ամեն ամիս ապրուստի դրամ կտամ, պայմանով, որ ձեռք չմեկնես մարդկանց և մի հարմար գործ գտնես, աշխատես։ Ես էլ ծանր օրեր եմ ապրել Փարիզում, բայց մուրացկանություն չեմ արել։ Կգաս մեր տունը ամեն ամսի վերջին, կստանաս գումարը, հենց որ չեկար, կիմանամ, որ արդեն աշխատում ես։—Մարդը համաձայնվում է և հաջորդ օրվանից փողոցներում չի երևում, իսկ վեց ամսից հետո էլ չի գալիս սահմանված գումարն ստանալու։*

*Նա տարիներ շարունակ օգնել է մի շարք ուսանողների, որոնք այս կամ այն պատճառով թոշակ չեն ստացել և նյութական անապաստ պայմանների մեջ են եղել, բայց օգնել է, երբ վստահ է եղել, որ տվյալ ուսանողը խոստումնալից ուժ է։ Նյութականից բացի, ժամանակ էլ էր տրամադրում նման ուսանողներին։ Ինչպես իր սիրելի ուսուցիչներ Մե-*

յեն, Հյուբշմանը, ինքն էլ շատ ուսանողների հետ տանը պարապել է առանց նյութական որևէ ակնկալության, ընդհակառակը՝ նրանց առաջ բաց է արել նաև իր հյուրընկալ սեղանը:

Աճառյանի բնավորության այս կողմերին անծանոթ մարդիկ, չճանաչելով նրան մոտիկից, երբեմն այն տպավորությունն են ստացել, թե նա եղել է ժլատ, կոպեկի հաշիվը պահող մարդ: Մինչդեռ դա արտաքին տպավորություն էր, և առիթը ահա այսպիսի փաստերն էին.

1920-ական թվականների կեսերին ինչ-որ նպատակի համար համաժողովրդական հանգանակություն է կատարվում: Բոլոր հիմնարկներն իրենց հավաքած գումարները տանում, մուծում են կենտրոնական փոստի դրամարկղը: Ներկայանում է նաև Աճառյանը և հերթի կանգնում: Երբ մոտենում է դրամարկղին, հանում և մի մեծ գումար է հանձնում:

— Ո՞ր հիմնարկի կողմից է,— հարցնում է աղջիկը:

— Իմ կողմից է, գրեցեք՝ Հրաչյա Աճառյանից:

— Հասկացանք, Հրաչյա Աճառյանի միջոցով է մուծվում, բայց գումարը ո՞ր հիմնարկումն է հավաքված,— կրկին հարցնում է աղջիկը, որի մտքով չէր անցնում, թե մի անհատ այդքան մեծ գումար կարող էր նվիրել: Աճառյանը նորից է բացատրում, թե դա իր գրպանից է: Աղջիկը ընդունում է գումարը, տալիս է անդորրագիրը: Աճառյանը ինչ-որ գումար էլ մուծում է «Արմատական բառարանի» հերթական պրակները Մոսկվա ուղարկելու համար. աղջիկը գումարն ստանում է, բայց 5 կոպեկ պարտք է մնում: Մտածելով, թե նման մի հարուստ մարդու համար 5 կոպեկը չնչին բան է, հանգիստ ասում է, թե մանր չունի:

— Է՜հ, չունես, կսպասեմ, աղջի՛կս,— պատասխանում է պրոֆեսորը, և սպասում է ժամեր և չի մեկնում, մինչև որ 5 կոպեկը չի ստանում: Արդյո՞ք սա ժլատություն էր, թե՞ մարդկանց օրինականություն սովորեցնելու միջոց:

Ահա մի ուրիշ դեպք, որին ներկա եմ եղել ինքս: Մի անգամ, ասպիրանտական պարապմունքի ժամանակ, մեր ընկերներից մեկն ասաց, թե լավ կոշիկ է տեսել խանութում, ուզում է գնել, փող չունի: Մենք էլ չունեինք: Թոշակի օրն էլ մոտ չէր: Խորհուրդ տվինք դիմել Աճառյանին, և նա դիմեց: Աճառյանը սիրով համաձայնվեց, բայց իսկույն էլ ասաց.

— Վերադարձնելու պայմանո՞վ ես ուզում, թե՞ անվերադարձ:

— Անշուշտ վերադարձնելու:

— Բայց դա ավելի դժվար է. եթե վերադարձնելու պայմանով ես ուզում, պիտի ասես, թե երբ ես վերադարձնելու, իսկ եթե անվերադարձ ուզես, հարցը հիմա կվերջանա:

— Այսինքն:

— Այսինքն՝ կամ կտամ, կամ չեմ տա. ապագայի գործ չի մնա:

— Վերադարձնելու պայմանով,— համառեց ասպիրանտը,— թոշակի օրը կտամ:

«Կտամ կամ չեմ տա» բացատրությունը, իհարկե, թեական չէր դարձնում տալը. Նա կտար անպայման, եթե անվերադարձ էլ ուզեինք: Բայց երբ ժամկետ էր սահմանում, նշում էր իր մոտ և նույն օրն էլ պահանջում, անգամ հիշեցնում, որպեսզի ստացողը չմոռանա: Պարտքի տակ մնալը վատ բան է, ասում էր, մարդս կորցնում է իր արժանապատվության որոշ բան, կախման մեջ մնում պարտատիրոջից: Տվեց գումարը, իր մոտ նշեց, և սահմանված օրն էլ ստացավ...

Աճառյանի բնավորության այս կողմը ցույց տվող լավագույն մանրադեպը, որ արդեն քառասուն տարի է պատմվում է մեր մտավորականության շրջանում, հետևյալն է: Համալսարանի դասախոսներից մեկը, մասնագիտությամբ ինժեներ Աշոտ Մոիսեիչը, բաժանորդագրվում է «Արմատական բառարանին», երբ առաջին պրակը ստանում է, փողը չի տալիս, ասելով, թե մոտը չկա: Կենսուրախ, կատակասեր, կերուխումի սիրահար ինժեները դիտմամբ ձգձգում է փողը, մինչդեռ Աճառյանը շարունակ հիշեցնում է նրան իր պարտքը: Մի անգամ էլ տեսնում է, որ նա մի խումբ վարորդների հետ ինչ-որ կրպակի մոտ կանգնած գարեջուր է խմում և հետո բոլորի փոխարեն վճարում: Մոտենում է ասում.

— Բարեկա՛մ, գարեջուր խմելու փող ունես, պարտքդ տալու չունե՞ս:

Ինժեները, որ պարզապես կամեցել էր զվարճանալ, հրավիրում է նրան էլ գարեջուր խմելու: Աճառյանը մերժում է և նրան կանչելով մի կողմ, ասում է.

— Ամոթ է, քանի տարի է պարտքդ չես վճարում: Եթե փող չունես, ես քեզ անվերադարձ 3 ռ. տամ, վճարի՛ր, պարտքով մնալը լավ բան չէ:

Գլուխը բավականաչափ տաքացրած ինժեները համաձայնվում է, առնում 3 ռ., բայց փոխանակ պարտքը մարելու, այդ գումարն էլ է գարեջրի տալիս: Էլի անցնում են տարիներ... Աճառյանի մահվան օրը նրա դագաղի մոտ ամենից անկեղծ արտասուք թափողներից մեկը եղավ զվարճասեր ինժեները...

Սովորաբար մարդիկ շատ ավելի կապված են լինում իրենց մոր, քան հոր հետ: Աճառյանը այստեղ էլ բացառություն էր: Սիրում էր անշուշտ իր մորը, բայց հոր մասին խոսելիս թրթռում էր նրա ձայնը, հուզվում էր, երբեմն արտասվում: Հոր արհեստի հետ կապված կարճ հերունը, որով նա փայտիկներ էր խփել կոշիկների ներբաններին, որպես հիշատակ

պահեց մինչև կյանքի վերջը, երբեմն մտերիմ մարդկանց ցույց էր տալիս այնպիսի երկյուղածությամբ, ինչպես ցույց են տալիս թանգարանային մեծարժեք հնությունը: Այդ բացառիկ սերը հաշվի առնելով, նրա մահից հետո երբ գրականության և արվեստի թանգարանում ստեղծվեց անկյուն մեծ լեզվաբանի համար, ի թիվս նրա սիրած այլ իրերի՝ սուրճի բաժակի, աշակերտական թանաքամանի և այլնի, արժանի տեղ հատկացվեց նաև աշխատանքը խորհրդանշող այդ գործիքին:

Շատ էր սիրում ծաղիկներ: Տանը, ընդունարանում ստեղծել էր ծաղիկների, կանաչ թփուտների մի անկյուն: Նստած նրանց մոտ, երբեմն հենց ճյուղերի տակ, հաճախ ասում էր.

— Այսպես կանաչների մեջ մարդ իրեն զգում է անտառում, բնության գրկում: Երանի գեղջկական կյանքով ապրողներին: Ծաղիկը,— ասում էր թրթռացող ձայնով,— շունչ ունի, մարդու պես զգայուն է, չպետք է տրորել այն, մանավանդ որ մարդ արարածը հնարավորություն ունի իր վշտերը հայտնելու, պահանջելու, բողոքելու իրեն տրորողների դեմ, իսկ ծաղիկը զուրկ է այդ հնարավորությունից, լուռ կարող է արտասվել...

Հավատում էր, թե գիտությունը մի օր բույսերի զգայական կյանքը հասկանալու, նրանց ձայները լսելու, նույնիսկ այդ ձայների մեջ տրամադրություններ տեսնելու գործիքներ պիտի հնարի:

Սիրում էր նաև ընտանի կենդանիներ: 1931—1932 թվականներին պահում էր մի շնիկ, որին ինքն էր կերակրում, խնամում, հաճախ զրուցում նրա հետ, հանդիմանում:

— Անպիտա՛ն,— ասում էր,— ինչո՞ւ ես սենյակը տակնուվրա արել, չգիտե՞ս, որ տանը կին չկա, որ մաքրի:

Պատերազմի տարիներին տիկին Սոֆիկը համոզեց նրան մի կով գնել, որը պահվում էր գյուղում: Այդ անասնապահությունը այնքան էլ նրա սրտովը չէր, բայց պետք էր տեսնել, թե ինչպիսի ուրախության մեջ էր, երբ ծնվեց հորթուկը: Բերել տվեց քաղաք, պահում էր սենյակում, անձամբ կերակրում, գուրգուրում:

Ուներ մի կատու, որին նույնպես սիրում էր, նստեցնում ծընկներին մինչև այն օրը, երբ չարաճճի ու խաղասեր կենդանին տակնուվրա արավ իր ձեռագրերից մեկի քարտարանը: Զայրացել էր, դուրս գցել կատվին:

Դրանից հետո այլևս կատու չէր պահում:

Լինելով աշխատասեր, ջանասեր, օրինապահ մարդ, չէր հանդուրժում պորտաբույծներին, անբաններին, խաբեբաներին, հատկապես՝ հանրային սեփականությունը հափշտակողներին: 1920-ական թվականների վերջերին Երևանի հանրային գրադարանում կատարվել էր գրքերի գողություն: Գողերը բռնվել էին: Տեղի էր ունեցել հասարակական բաց դատ: Եվ... որպես հասարակական մեղադրող հանդես էր եկել մեծ լեզվաբանը, նա, որ իր ողջ կյանքի ընթացքում դատարանի հետ գործ չէր ունեցել: Այդտեղ նա արտասանել է ցասումնալից մի ճառ, պահանջելով խստորեն պատժել գրքեր հափշտակողներին:

Անասելի հոգատար լինելով խոստումնալից երիտասարդների նկատմամբ, չէր հանդուրժում ծույլերին, չէր քաջալերում այն ուսանողներին, որոնք սխալ ընտրելով իրենց մասնագիտությունը, իզուր ժամանակ էին վատնում. Իսկ երբ նկատում էր, որ այս կամ այն ուսանողի ծուլությունն ու բթամտությունը միանում են ամբարտավանությանը, հարգանքի պակասի՝ դեպի դասախոսն ու առարկան, դառնում էր անողոք: Նրա ուսանողներից մեկը գրաբարի հետ գլուխ չի ունեցել, չի հասկացել մանավանդ քերականական օրենքները, որքան էլ մանրամասն բացատրել է նրան: Մի անգամ, երբ նորից ու նորից բացատրել է հայցական հոլովի կիրառությունները և այդ ուսանողը այնուամենայնիվ չի հասկացել և իրեն էլ պահել է ամբարտավան, Աճառյանը ասել է.

— Քեզնից լեզվաբան կամ լեզվի ուսուցիչ դուրս չի գա, տղա՛ս:

— Հապա ի՞նչ դուրս կգա,— ասել է ուսանողը, փորձելով կատակի վերածել:

— Դդում ծախող,— ասել է, - բայց խկույն էլ փափկել, մոտեցել ուսանողին, շոյել գլուխը, հանգիստ խրատել.

— Չիմանալը հանցանք չէ, տղա՛ս, չսովորելն է հանցանք: Ջանասիրությամբ հնարավոր է ամենադժվար առարկան էլ ըմբռնել:

Աճառյանը հաճելի զրուցակից էր, օժտված հումորի զգացողությամբ: Սիրում էր սրամիտ բառախաղերը:

Առհասարակ չէր լինում խընջույքներում: Իսկ եթե հարկադրըված մասնակցում էր, աշխատում էր մնալ աննկատելի, իր համար գտնում էր հաճելի մի զրուցակից ու զրուցում. դա ավելի քիչ է հոգնեցնում, ասում էր, քան դատարկ բաժակաճառեր լսելը:

Մի խնջույքի ժամանակ, սեղանի կառավարիչը, նկատելով, որ պրոֆեսորը չի լսում իրենց ճառերը, նկատողություն է անում և երբ տեսնում է, որ դա էլ չի օգնում, որպես պատիժ առաջարկում է արտահերթ մի շիշ գարեջուր խմել: Աճառյանը հրաժարվում է. սեղանապետը պնդում է: Այն ժամանակ նա տեղից վեր է կենում և հանգիստ ասում է.

— Ծեր եմ, խնայեցեք տարիքը ս. այդքան չեմ կարող խմել. գուցե ձե՞զ հետ կիսենք:

— Կիսենք, կիսենք,— ասում է սեղանապետը,— կեսը ես կըխմեմ, կեսն էլ՝ դուք:

— Ո՛չ, այդպես չկիսենք,— պատասխանում է Աճառյանը:— Խմելու ենք գարե-ջուր: Գարին՝ ձեզ, ջուրն՝ ինձ:

Բարեբախտաբար սեղանապետը չի հասկանում վիրավորանքը:



# «ԿԱՅԾԻ» ՀԱՂԹԱՐՇԱՎԸ

Ահա արդեն տասը տարի է, ինչ անց են կացվում «Կաշվե գնդակ» ակումբի մասսայական մրցումներ, որոնց մասնակցում են մեր անծայրածիր երկրի 200 հազարից ավելի բակային թիմեր: Մի հետադարձ հայացք գցելով «Կաշվե գնդակի» անցած խաղարկություններին, հեշտ է նկատել, որ այդտեղ մեծ ավանդ ունեն և հայ պատանիները :1966-ին չեմպիոնի կոչումը նվաճել է Երևանի «Անին»: Երեք տարի անց, նա կրկնել է իր հաջողությունը: 1968 թվականին, երբ «Կաշվե գնդակի» մրցումներն արդեն անց էին կացվում տարիքային երկու խմբով, հայ ֆուտբոլիստները հասան կատարյալ հաջողության: Այդ տարի գլխավոր պարգևները տուն բերեցին Երևանի «Մասիս» (ավագ տարիք) և «Էրեբունի—2750» (կրտսեր տարիք) թիմերը: Եվ ահա, «Կայծը» ետ չմնաց իր նախորդներից: Հաղթող դառնալով հանրապետական մրցումներում, նա իրավունք ստացավ մասնակցելու եզրափակիչ փուլին ,որն անց էր կացվելու Կույբիշևում (11—12 տարեկաններ): «Կայծին» այստեղ հարկ եղավ «բռնկվել» ամբողջ ուժով և առավել ցայտուն կերպով ցուցադրել այն հատկանիշները, որոնք նրան մինչ այդ հաղթանակներ էին բերել՝ աննահանջ պայքար, գոլի տենչ, կամք և մարտունակություն: Նախնական խաղերում նրանք մեկը մյուսի ետևից պարտության մատնեցին Իվանովոյի «Զվեզդային»՝ 6:0, Դուշամբեի «Սալյուտին»՝ 1:0, Էստոնական «Ռոմանտիկային»՝ 4:0, Չիտայի «Ինգուդային»՝ նույնպես 4:0, և ոչ-ոքի (1:1) ավարտելով հանդիպումը Բելոռուսիայի Գրոդնո քաղաքի «Ֆակել» թիմի հետ, իրենց խմբում վստահորեն գրավեցին առաջին տեղը: Դա նրանց իրավունք տվեց շարունակելու հետագա պայքարը: Ճիշտ է, կիսաեզրափակիչում և եզրափակիչում մեր ֆուտբոլիստներն հաղթանակի հասան միայն 11-մետրանոցներով (հիմնականում 0:0), բայց չէ՞ որ այստեղ մրցակիցները՝ Նամանգանի (Ուզբեկստան) «Ուրագանը» և Օրջոնիկիձեի «Նադեժդան» անհամեմատ ուժեղ էին նախորդներից:

Եվ ահա, դժվարին պայքարը մնաց ետևում: «Կաշվե գնդակ» ակումբի 1974 թվականի խաղարկության ոսկե մեդալները, մրցանակ-գավաթը և ֆուտբոլի ՍՍՀՄ հավաքականի անդամների ինքնագրերով գնդակը գրանցում ստացան Երևանում: Ոսկե մեդալներ ստացան մարզիչ Ֆ. Վերան-



## ՆՎՆԸՎԸ

*ՄԻՔԱՅԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

Միշտ ուշացող է, միշտ նվնվան,
Հենց Նվնըրվ են կոչում նրան:
Առավոտ է.— Նվնը՛րվ, վե՛ր կաց...
— Ես արթուն եմ, թեկուզ պառկած...
Զինվոր հո չե՞մ,
Միանգամից որ վեր թռչեմ:
— Ջանգը տվին, դեռ տանն ես դու:
— Ի՞նչ է, էլ զանգ չի՞ լինելու:—
Ու նվալով, փնթփնթալով,
Գիրք ու տետր իրար տալով,
Դուրս է վազում ու... ներս գալիս,
Հիմա էլ սուտ
Եվ անարցունք ո՛նց է լալիս.
— Ես «թվաբի» գիրքը չունեմ,
«Աշխարհ» չունեմ, «բնագ» չունեմ...—
Այսպես երկար շարքով թվեց.
— Պատմությունն էլ Սոսը տարավ,
ետ չտվեց...
Գրիչս էլ կոտրեց Սաքոն,
Ես ո՞նց գնամ
Կիսատ-պռատ պայուսակով:—
Պապիկն այստեղ չհամբերեց,
Գավազանը մոտիկ բերեց.
Նվնըրվն իսկույն գլուխն առավ
Ու դուրս թռավ...

Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

յանը, թիմի անդամներ Գ. Կարապետյանը, Գ. Իսպիրյանը, Ս. Ավդալյանը, Հ. Գրիգորյանը (թիմի ավագ), Ա. Ավետիսյանը, Է. Ղալթախչյանը, Լ. Մանուկյանը, Ա. Մարկոսյանը, Ա. Եղյանը և Է. Վերանյանը:

Յուրաքանչյուր թիմ ունի իր թույլ և ուժեղ խաղացողները: «Կայծում» բոլորն էլ արժանի են գովասանքի: Յուրաքանչյուր մրցապայքար ունի իր հերոսները: «Կայծում» ևս կան այդպիսիք: Կարելի է նշել դարպասապահ Գարեգին Կարապետյանին, որը թիմի համար դժվարին պահերին ետ մղեց 11 մ. տուգանային չորս հարված, կամ՝ Էդվարդ Վերանյանին, որը շատ արագ էր գտնում մրցակցի դարպասի «քանանքին» և թիմի խփած 16 գոլերից 13-ի հեղինակն է: Ի դեպ, մրցումների ավարտից հետո, մարզչի որդուն հանձնվեց «տեխնիկապես լավագույն պատրաստվածության համար» մրցանակը:

Պատանի ֆուտբոլիստները լուրջ մոտեցում են ցուցաբերում նաև դասերի նկատմամբ: Եռամսյա ընդմիջումից հետո, նրանք կարոտով վերադարձան դպրոց՝ ծարավի ուսման: Նրանք ծարավի են նաև նոր բարձունքների, նոր մրցակցության: Կգա հերթական գարունը, և «Կայծի» պատանիները վերստին կսկսեն իրենց երկար ու դժվարին մրցավեճը, այս անգամ արդեն «Կաշվե գնդակի» ավագ տարիքի ֆուտբոլիստների մրցապայքարում:

ԱՐՍԵՆ ԲԱԲԱՅԱՆ

## Վ Ե Ճ

*ՎԼԱԴԻՄԻՐ ՕՐԼՈՎ*

Ինչ-որ մարդկանց մեջ
(Մոռացել եմ՝ ում),
Ինչ-որ ժամանակ
Սուր վեճ է ծագում:
Եվ ինչ-որ բանից
Վիճելով տաք-տաք,
Դուռն են առյուծի
Համբուրում նրանք.
— Առյո՛ւծ իմաստուն,
Բարեկա՛մ, քավո՛ր,
Մեզնից ո՞վ է ճիշտ,
Ո՞վ է մեղավոր:

Առյուծն է նայում
Խեր-խոլոր աչքով.
— Քանի առյուծ եմ,
Արդար չէ ոչ ոք...

Թարգմ. Լ. ՍԱՐԳՍՅԱՆԻ

## ԴՐՈՒԺԻՆՆԵՐՈՒՄ ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ



# ՆՐԱՆՑ ՓԱՌՔԻ ՀԵՏԱԽՈՒՅԶՆԵՐԸ

Հայրենական պատերազմի տարիներին Հայաստանի պատանիների ձեռքերով ռազմաճակատ ուղարկվեց 776 ծանրոց: Պիոներները ամռան ամիսներին իրենց աշխատանքը հայտարարեցին ռազմաճակատի օգտին, այդ նույն տարին պաշտպանության ֆոնդը մուծեցին 251 հազար ռուբլի, հավաքեցին 470 տոննա գունավոր մետաղ, 61 տոննա դեղանյութ: Պատերազմի տարիներին հանրապետության պիոներները «Հայաստանի կոմերիտական» տանկային շարասյան ֆոնդը մուծեցին մեկ միլիոն 300 հազար ռուբլի, օդաչուներին նվիրեցին «Հայաստանի պիոներ» կործանիչը, 100 հազար ռուբլի հավաքեցին Օդեսայի դպրոցների վերականգնման համար:

Գուգարքի շրջանի Վահագնի գյուղի պիոներ-դպրոցականների ջանքերով 1942 թվականին կազմակերպվեց «Կոմերիտական չերվոնեցների» հավաք՝ ռազմաճակատում կռվող մարտիկներին տաք հագուստ ուղարկելու համար:

Դեռ նոր էին բուժվում հայրենիքին պատճառված պատերազմական վերքերը, նոր էին ռազմաճակատից դարձել նրա հազարավոր զավակները, դեռ նոր էին հայտնաբերվում նորանոր հերոսների շիրիմներ, երբ Ուկրաինայի, Բելոռուսիայի և Մերձբալթիկայի պիոներների օրինակով, 1948 թվականին, Ծաղկաձորում գումարվեց պատանի տուրիստների հանրապետական առաջին հավաքը: Հավաքը որոշեց գնալ մարտական փառքի վայրերով, ուսումնասիրել ավագների անցած ուղին, փնտրել անհայտ հերոսներին:

Հարյուրավոր կարմիր հետախույզների ջոկատներ դուրս եկան զոհված անհայտ հերոսների հետքերով, հավաքեցին հարուստ նյութեր:

Հայտնաբերեցին հազարավոր անհայտ հերոսների, գտան նրանց գերեզմանները, ստեղծեցին 450 մարտական փառքի սրահներ և թանգարաններ, բարեկամական կապերի ակումբներ, այդ ամենը կատարելով «Ոչ ոք չի մոռացվել, ոչինչ չի մոռացվել» նշանաբանով:

Մայրաքաղաքի Մաքսիմ Գորկու անվան միջնակարգ դպրոցի պիոներները բազմաթիվ լավ գործերի ու նախաձեռնությունների հեղինակներ են: Նրանք արշավի են ելել դպրոցի այն շրջանավարտների հետքերով, ովքեր մասնակցել են Մեծ հայրենականին:

Դպրոցի փառքի սրահը պատմում է պատերազմի մասնակից իր սաների՝ Մարտել Մարտիրոսյանի, Կարլեն Մելիքսեթյանի, Լևոն Աբրահամյանի, Ռաֆիկ Ստեփանյանի, Միհրան Միրիջանյանի, Սուրիկ Մուսախանյանի, Մուկուչ Պապյանի, Վահագն Ղարագյոզյանի, Կիմ Պետրոսյանի, Օսիկ Փափուչյանի, Էսպերանս Բայազցյանի և շատերի մասին: Դրուժինայի բոլոր ջոկատները անվանակոչված են հերոսների անուններով: 1944 թվականի ձմռանը Կորսուն-Շևչենկոյի շրջանում, Վալյավա գյուղի ազատագրման ժամանակ շատ ռազմիկներ զոհվեցին: Գյուղի բնակիչները զոհված մարտիկների հիշատակը հավերժացնող հուշարձան են կանգնեցրել և պատվանդանին փակցրել զոհվածների նկարները: Նրանց մեջ է Կարլեն Մելիքսեթյանը, որի նկարի տակ գեղեցիկ տառերով քանդակված է իր մի բանաստեղծության երկու տողը.

**«Ասա՛, հայրենիք, սրանից ավել**
**Էլ ի՞նչ ես ուզում, որ տամ քեզ նվեր...»**

Երևանի 62-րդ միջնակարգ դպրոցի կարմիր հետախույզները գնացել են հայկական 89-րդ Թամանյան դիվիզիայի հետքերով, հարուստ նյութեր են հավաքել հայ մարտիկների հերոսությունների մասին:

1943 թվականի հունվարի 10-ին քաջարի մահով ընկավ տանկիստ Ալբերտ Բոյուքյանը: Քանաքեռի Խ. Աբովյանի անվան 84-րդ դպրոցի կարմիր հետախույզները, դպրոցի ուսմասվար Ցոլակ Ջիլավյանի ղեկավարությամբ, գնացին Ալբերտի հետքերով, հասան Օդրովկա, ուր վերջին մարտերն է մղել հայ քաջարի տանկիստը: Օդրովկայում և Սուխայա-Մեչյոտկա վայրում, հերոսի հիշատակին հուշարձան է կանգնեցված: Զելենոգրադ քաղաքի 17-րդ դպրոցի 7-րդ «բ» դասարանի պիոներական ջոկատը կրում է Ալբերտ Բոյուքյանի անունը:

Լենինական քաղաքի 23-րդ միջնակարգ դպրոցում գործում են պատանի հետախույզների երեք ջոկատներ, որոնց մեջ ընդգրկվում են մոտ երեք հարյուր պատանիներ ու աղջիկներ: Այդ ջոկատներից մեկն իր առաջ խնդիր է դրել արշավներ կազմակերպել 89-րդ հայկական Թամանյան հրաձգային և 394-րդ լեռնահրաձգային դիվիզիաների անցած մարտական ուղիներով: Ջոկատի նպատակն է տեսնել այն վայրերը, որտեղ կռվել են իրենց հայրերն ու պապերը, միաժամանակ որոնումներ կատարել, գտնել անհայտ կորած զինվորների գերեզմաններ, ինչպես նաև նյութեր հավաքել իրենց ռազմահայրենասիրական թանգարանի համար:

1971 թվականի դեկտեմբերի 18-ին Իջևանի շրջանի Աղդան գյուղի միջնակարգ դպրոցի հասցեով մի նամակ ստացվեց: Այն գրել էր Սովետական Միության մարշալ Կոնևը: Մարշալը շնորհավորում էր դպրոցի ուսուցչական կոլեկտիվին և աշակերտներին, դպրոցը Սևաստոպոլի հերոսական պաշտպանության ժամանակ զոհված իր մարտական ընկերոջ՝ գնդապետ Համայակ Մեհրաբյանի անունով կոչելու համար: Նա վստահություն էր հայտնում, որ դպրոցի

մանկավարժական կոլեկտիվը, պիոներներն ու կոմերիտականները իրենց աշխատանքով և առաջադիմությամբ կշարունակեն հայրերի հերոսական ավանդույթները և միշտ պայծառ կըպահեն իրենց հայրենակից քաջարի հրամանատարի հիշատակը: Դպրոցը մարշալին պատասխանեց երդման ու հավատարմության խոսքերով:

Օրինակները շատ են, դրանք խոսում են մեր հանրապետության կարմիր հետախույզների հայրենասիրական մեծ աշխատանքի մասին: Հանրապետության քաղաքներում ու գյուղերում կառուցվել են 400-ից ավելի հուշարձան-կոթողներ և հուշաղբյուրներ: Այդ գործին իրենց մասնակցությունն են բերել նաև դպրոցականները:

*Ի. ԷԼԼԱՐՅԱՆ*

*Պատմական հուշարձանների պահպանման հայկական ընկերության նախագահի տեղակալ*

# ԴԻԼԻՋԱՆԻ ՊԱՏԱՆԻ ՏԵԽՆԻԿՆԵՐԻ ԿԱՅԱՆԸ



*Ռադիոտեխնիկական խմբակի անդամները հեռուստացույց հավաքելիս:*

Երեք տարի առաջ է կազմակերպվել Դիլիջանի պատանի տեխնիկների կայանը: Կայանի դիրեկտորը, որը միաժամանակ հրթիռամոդելիստների խմբակի ղեկավարն է, Հայրենական մեծ պատերազմի մասնակից Ջհան Բարսեղյանն է:

Հրթիռամոդելիստների խմբակում 18 պատանիներ են ընդգրկված: Նրանք հիանալի մոդելներ են պատրաստում: Լենինականում տեղի ունեցած պատանի հրթիռամոդելիստների հանրապետական մրցույթներին մասնակցեցին նաև խմբակի սաները: Նրանց հրթիռները բոլորից երկար մնացին օդում: Խմբակը արժանացավ դիպլոմի: Գոյության երեք տարվա ընթացքում դա երրորդ մրցանակն էր:

Ավտոմոդելիստների և ավիամոդելիստների խմբակները ղեկավարում է Ռաֆիկ Բարսեղյանը: Սաները՝ Գառնիկը, Արմենը, Կարենը խառատային, ֆրեզերային, շաղափող հաստոցների վրա պատրաստում են անհրաժեշտ մասերը, իսկ սրանցից էլ՝ ավտոմեքենաների, ինքնաթիռների, օդապարիկների մոդելներ:

Նրանք պատրաստել են նաև հայրենական արտադրության «Կատյուշա»-ի մոդելը, որը հիմա գտնվում է Մոսկվայի պատանի տեխնիկների լավագույն գործերի համամիութենական ցուցահանդեսում:

Ռադիոտեխնիկական խմբակի սաները՝ դասատուներ Վիլիկ Թամրազյանի և Նորիկ Դավթյանի ղեկավարությամբ պատրաստել են էլեկտրական ուժեղացուցիչներ: Դրանք իրենց նրբությամբ, գեղեցկությամբ, դիմացկունությամբ արժանացել են մասնագետների բարձր գնահատականին և պարգևատրվել հանրապետական պատվոգրերով: Նրանց լավագույն աշխատանքներից է էլեկտրականությամբ աշխատող գունա-ալիքային-ձայնային ապարատը:

Ռադիոտեխնիկական խմբակի անդամները կարողանում են վերանորոգել ժամանակակից ռադիոընդունիչներն ու հեռուստացույցները: Նրանք ռադիոֆիկացրել են քաղաքի մի շարք դպրոցներն ու մանկապարտեզները:

Լավ գործեր են անում պատանի քիմիկոսները, ֆիզիկոսները, հմուտ ձեռքերի, լուսանկարչական և մյուս խմբակների անդամները: Կայանում 12 խմբակ է գործում, այստեղ տեխնիկական մասնագիտություն են ձեռք բերում 160 պատանիներ:

Ամռանը, երբ դպրոցում դասեր չկան, նրանք կազմակերպում են արշավներ, արտադրական էքսկուրսիաներ են կատարում դեպի քաղաքի գործարանները, ֆաբրիկաները:

Կասկած չկա, որ նրանցից շատ-շատերը վաղը կդառնան անվանի վարպետներ:

*ՍՏԵՓԱՆ ՀՈՎԻՎՅԱՆ*

# ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ «ԹԵՎԱՎՈՐ» ՄԵՏԱՂԻ ՄԱՍԻՆ

*ԱԼԲԵՐՏ ՇԱՀԱԶԻԶՅԱՆ*

Լեգե՞նդ է արդյոք, թե՞ իրողություն: Ո՞վ գիտի: Մի օր Հռոմի կայսր Տիբերիուսի մոտ եկավ մի մարդ և նրան մատուցեց արծաթի նման փայլուն, բայց արտակարգ թեթև մետաղից պատրաստված մի գավաթ: Վարպետն ասաց, որ դա բոլորովին անհայտ մետաղ է: Նա այդ մետաղն ստացել էր կավահողից: Խոր մտածմունքի մեջ ընկավ Տիբերիուսը: Նա վախեցավ, որ նոր մետաղը իր հատկություններով կարժեքազրկի գանձարանում պահված ոսկին ու արծաթը :Կայսրը գլխատել տվեց վարպետին: Հրամայեց քանդել նրա արհեստանոցը:

Լեգե՞նդ է, թե՞ իրողություն, դժվար է ասել: Հայտնագործված մետաղը կարող էր բարիք դառնալ մարդկության համար, բայց նա անհայտ մնաց տասնութ հարյուրամյակ շարունակ: Դա ալյումինն էր, որ 150 տարի առաջ նորից հայտնագործվեց որպես քսաներորդ դարի «թևավոր» մետաղ:

— Իսկ ինչո՞ւ թևավոր,— կհարցնեք դուք:

Հապա նայեցե՛ք ձեր շուրջը. ամեն օր մեր երկրի օդանավակայաններից վեր են բարձրանում հարյուրավոր օդանավեր: Իսկ ինչի՞ց են պատրաստվում այդ օդանավերը: Դուք, հավանաբար, արդեն գլխի ընկաք, որ խոսքը ալյումինի մասին է: Ժամանակակից օդանավաշինության զարգացումն անհնարին է պատկերացնել առանց ալյումինի՝ «թևավոր» մետաղի: Թևավոր, որովհետև ինքնաթիռների երկու երրորդ մասը պատրաստված է ալյումինից և նրա համաձուլվածքներից: Ալյումինը երկուսուկես անգամ թեթև է երկաթից, ավելի քան երեք անգամ՝ պղնձից: Նրա խառնուրդը ուրիշ մետաղների հետ տալիս է դյուրալյումին: Դյուրալյումինից են պատրաստում ժամանակակից հսկա օդային լայներները, տիեզերանավերի և երկրի արհեստական արբանյակների մասերը: Ալյումինի ծառայությանն են հաճախ դիմում կոնստրուկտորները՝ նոր շարժիչներ, ավտոմեքենաներ և վագոններ նախագծելիս:

Ալյումինը ջերմության լավ հաղորդիչ է: Ջերմության և էլեկտրականության տեսակետից այն միայն զիջում է ոսկուն, արծաթին և պղնձին: Ալյումինից պատրաստում են կաբելներ, բարձր լարման էլեկտրահաղորդագծեր, տրանսֆորմատորներ, կոնդենսատորներ և այլ արտադրանք: Ալյումինը չի քայքայում նաև վիտամինները: Դրա համար էլ նրանից պատրաստում են շաքարի, գարեջրի, յուղի, հրուշակեղենի և այլ մթերքների տեղափոխման ու պահպանման տարաներ: Ալյումինի շերտերով են զարդարում ժամանակակից շենքերի դռների ու պատուհանների շրջանակները: Ալյումինի շատ բարակ, թղթի պես նուրբ թերթերով մթերքներ են փաթաթում, ինչպես թեյը, որպեսզի պահպանվի համն ու՝ հոտը: Ալյումինի մազանման հազար մետրանոց «լարը» ընդամենը քսանութ գրամ է կշռում և կարելի է այն տեղավորել լուցկու տուփի մեջ: Գյուտարարներն ստեղծել են ալյումինի շերտով պատած գործվածք, որն ունի հրաշալի հատկություններ: Դրանից պատրաստված վարագույրները լավ կարգավորիչներ են մեր բնակարաններում.



## ՇՐՋԱԳԱՅՈՂ ԳԵՏԵՐ

**Հեռավոր արևելքում հոսում է Կոնտրովող անունով մի գետ, որի «վարքագիծը» շատ տարօրինակ է: Երեք ամիսը մեկ գետը փոխում է իր ընթացքը. մեկ թափվում է Ամուրի վտակ, գեղեցկուհի Ուսսուրիի մեջ, մեկ՝ տայգայական գետ Բիկինի:**

***

**Կամչատկայի հյուսիսում, Մագադանի մարզում հոսում է չափազանց տարօրինակ, 640 մ երկարություն ունեցող Պենժինա գետը: Նա թափվում է պենժինյան ծովախորշը, որը հայտնի է ծովային բարձր մակընթացություններով: Հենց սկսվում է մակընթացությունը, գետը ետ է դառնում և բարձրանում հոսանքին հակառակ: Իսկ երբ մակընթացությունը դադարում է, Պենժինան փոխում է ընթացքը և հոսում է ներքև՝ դեպի ծով:**

ամռանը վարագույրի մետաղի շերտով պատած կողմը դուրս ենք անում, լույսի ճառագայթները թափանցում են ներս, իսկ ջերմությունը անդրադարձվում է, որի հետևանքով էլ սենյակում զով է փնում :Ձմռանը, ընդհակառակը, վարագույրը շրջում ենք, և սենյակը տաքանում է: Այսպիսի հագուստներն անվտանգ են դարձնում ձուլողների, հրշեջների աշխատանքը: Ալյումինի փայլուն, նուրբ թերթիկներից պատրաստված բազմաթիվ խաղալիքներով, ձյան ատողանձև փաթիլներով և անգին արծաթե շիթերով ենք զարդարում Նոր տարվա մեր տոնածառերը:

— Իսկ ինչպե՞ս հայտնագործվեց, ինչպե՞ս ըստացվեց այդ հրաշալի մետաղը,— կհարցնեք դուք:

Անգլիացի հռչակավոր գիտնական Հեմֆրի Դևին 1808 թվականին առաջինը փորձեց կավահողից դուրս կորզել անհայտ մետաղը, որը անվանեց ալյումին: Սակայն մետաղը դեռ չստացած, Դևին վախճանվեց: Նրա սկսած գործը շարունակեցին հանրաճանաչ շատ գիտնականներ՝ Շվեդիայում, Դանիայում, Գերմանիայում, Ֆրանսիայում: Բախտը ժպտաց գերմանացի Վյոլերին:

1827 թվականի հոկտեմբերի 22-ին նա ստացավ առաջին 30 գրամ ալյումինը՝ գնդասեղի գլխիկի չափ մանր հատիկներով: 1885 թվականին Փարիզի միջազգային ցուցահանդեսում աշխարհը տեսավ Անրի Դևիլի ստացած ալյումինի ձուլազանգվածները... Այդ ժամանակներում նորաձևության սիրահար փարիզուհիները իրենց զարդարում էին «կավից ստացած արծաթով»՝ ալյումինե ապարանջաններ, վզնոցներ, մատանիներ, որոնք ժամանակավորապես մթագնել էին ոսկու փայլն ու արժեքը: Ֆրանսիայի թագավոր Նապոլեոն Երրորդը մի մեծ նախաճաշի ժամանակ զարմացրեց հյուրերին: Կայսերական ընտանիքի անդամներն ու հարգարժան հյուրերը արժանացան ալյումինե գդալներով ու պատառաքաղներով ուտելու պատվին: Մյուսները ստիպված բավարարվեցին արքունական ճաշասեղանի սովորական սպասքով՝ ոսկե և արծաթե գդալներով, դանակ-պատառաքաղով:

Ալյումինի գյուտը հավերժացնելու համար 1884 թվականին ԱՄՆ-ում երեք կիլոգրամանոց ալյումինե մի փոքրիկ բուրգ դրվեց առաջին պրեզիդենտի՝ Վաշինգտոնի հուշարձանի պատվանդանին: Լոնդոնի կրկեսներից մեկի վրա դրվեց հունական դիցաբանության սիրո պատանի աստծո՝ Էրոսի ալյումինե արձանը: Իսկ Հռոմի պապը հավատացյալներից փող հավաքեց ու 1896 թվականին Ջուկինո եկեղեցու տանիքը պատել տվեց ալյումինե թիթեղով:

1950 թվականին Երևանում կառուցվեց «Կանազ» գործարանը: Դա մի հսկա ձեռնարկություն է: Այստեղ հսկայական արտադրամասերում կողք-կողքի շարված են վեց-յոթ մետրը երկարությամբ, ներսից հրակայուն աղյուսով պատված մետաղե տաշտակ ավազաններ: Այդ ավազանների մեջ լցնում են լուծիչ նյութեր, էլեկտրական բարձր ջերմության տակ լուծվում և եռում է կավահողը: Եռացող զանգվածի հատակին հավաքվում է հալված ալյումինը: Սառչելուց հետո ստացվում են մի քանի կիլոգրամից մինչև մեկ տոննանոց ալյումինե սալեր, որոնք ուղարկվում են մեր երկրի տարբեր մետաղամշակման գործարանները:



Ալյումին պարունակող կավահողով ամենից հարուստ են Սովետական Միությունը, Ամերիկայի Միացյալ Նահանգները, Ֆրանսիան, Իտալիան, Հոլանդիան, Հունգարիան, Հարավսլավիան:

# ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

ՍԻՎՐԵՆ ԱՐՇԱԿՈՒՆԻ

Սկիզբ չունեմ,
Չունեմ վերջ,
Ունեմ սահման,
Ունեմ մեջ:
Առաջին տառն
Իմ անվան
Անշուշտ շատ է ինձ նման:

([illegible])

* * *

Այն ի՞նչն է, ի՞նչ,
Ձեռքեր ունի,
Ափեր չունի,
Աչքեր ունի,
Կոպեր չունի:

([illegible])

* * *

Մի ճեղք կա հյուսիսում,
Բայց անունը չեմ ասում.
Բաժանում է նա երկու
Օվկիանոսներ ահարկու,
Երկու երկիր, երկու ծով,
Թերակղզի երկու զով,
Երկու հսկա մայր ցամաք,
Երկու ափեր ձյունածածկ:

([illegible])

* * *

Թռչում է, բայց թև չունի,
Մի հաստատուն ձև չունի,
Հայտնվում է ու չքվում
Գիշեր-ցերեկ երկնքում:

([illegible])



# «ԵՍ ՈՒ ՍԱՆԿԱՆ ԹՇՆԱՄՈՒ ԹԻԿՈՒՆՔՈՒՄ»

Կազմի վրա պատկերված տասնամյա այս երկու պատանիները, որ թաքնվել են խարխուլ ցանկապատի ետևում, տապկնոցի չեն խաղում, ո՛չ: Նրանք շատ ավելի լուրջ գործով են զբաղված, քան թույլ է տալիս նրանց տարիքը: Գերմանական ֆաշիստները շատ բանից զրկեցին այդ բելոռուս փոքրիկ տղաներին: Զրկեցին հարազատներից, դպրոցից, զրկեցին կուշտ ուտելուց ու տաք հագնվելուց, անհոգ մանկությունից: Շատ դառնություններ ապրեցին Իվան Սերկովի «Ես ու Սանկան թշնամու թիկունքում» գրքի տասնամյա հերոսները: Հայրենական պատերազմի հենց առաջին օրերին ֆաշիստները օկուպացրին նրանց հայրենի գյուղը, ծանր փորձությունների ենթարկվեցին նրանց հարազատները ու մտերիմները, նրանք ականատես եղան համագյուղացիների գնդակահարության, կողոպուտի, բռնության, բայց նրանց մաքուր ու ազնիվ հոգում վառ մնաց երազանքը, հաղթանակի հույսը:

Ու երեխաները որոշեցին վրեժխնդիր լինել: Բայց ինչպե՞ս: Ինչպես մեծերը: Գնալ պարտիզանության: Դրա համար ի՞նչ էր հարկավոր: Ասում են՝ պարտիզանները առանց զենքի մարդ չեն ընդունում: Ուրեմն հարկավոր էր զենք ճարել: Որտեղի՞ց: Պարզ բան է՝ մարտադաշտից:

Սկսեցին որոնել: Որոնումները ապարդյուն չանցան: Գտան և՛ գնդացիր, և՛ նռնակներ, ճիշտ է, առանց հրապատիճի, մի ամբողջ տուփ գնդացրային փամփուշտներ, նույնիսկ հակագազ, թեև ոչ սարքին վիճակում: Արդեն բավականաչափ զինվել են, բայց միևնույն է, մեծերն իրենց գաղտնիքները չեն վստահում նրանց, չեն հայտնում պարտիզանների տեղը: Զախորդությունն էլ մի կողմից է վրա տալիս՝ վառարանում չորացնելու նպատակով պահված թաց նռնակը պայթում է և ավերում Սանկայենց տանիքը: Տղաներից մեկ ուրիշն էլ դաշտում զենք փնտրելիս, ականի պայթյունի հետևանքով զրկվում է ոտքերից:

Տղաները չեն հանգստանում:

Փոքրիկ Սանկան, որ մշտապես ճակատին որևէ հարվածից առաջացած ուռուցքներ էր ունե-




նում, փորձում է ձեռք գցել իրենց տանը բնակվող ֆաշիստական սպայի ատրճանակն ու պայուսակը, բռնվում է, նետվում բանտ:

Իվանը մտածում է փրկել Սանկային, սակայն ինչպե՞ս: Նա գիտի, որ դա վեր է իր ուժերից, բայց չէ՞ որ կան պարտիզանները. եթե ինքը կարողանա թափանցել անտառ և գտնել պարտիզաններին, ուրեմն կկարողանա փրկել և Սանկային:

Ու փախչում է տնից, երկու օր ու գիշեր քաղցած թափառում է գյուղից-գյուղ, մտնում է անտառ: Բայց անտառը մեծ է, ցուրտ է, իսկ նա՝ ոտաբոբիկ, քաղցած, բայց ոչ հուսահատված: Եվ նա քայլում է ու երազում: Ու նրա աչքին պատկերանում են մոտիկ ապագայի անհեղ և ուրախալի իրադարձությունները՝ նա առաջնորդում է պարտիզաններին: Գիշեր է, բոլորը քնած են, հարձակվում են գյուղի ֆաշիստների վրա, կրակում է գնդացիրը: Նա պառկած է գնդացրորդի կողքին, հանկարծ գնդացիրը լռում է: Գնդացրորդը ծանր վիրավորվել է: Գերմանացիները մոտենում են, նրանք չգիտեն, որ Իվանը գնդացրի ետևն է ու մեկ էլ՝

— Տա՛-տա՛-տա՛, հը՞, ձեզ դո՞ւր է գալիս, ֆաշիստակա՛ն մռութներ:

Ու նա սլանում է նժույգով: Թե որտեղի՞ց հայտնվեց նժույգը, դա կարևոր չէ: Մտնում է գյուղ, ոստիկանների խրճիթները այրվում են, բնակիչների տները կրակը շրջանցում է:

Մարդիկ ուրախ դիմավորում են ազատարարներին:

— Հապա մի տեսե՛ք, Սիրցով Իվա՛նն է, Կիրիլի որդի՛ն,— ասում են գյուղացիները:

Ու հանկարծ...

Ու հանկարծ թշնամու գնդակը ծակում է նրա սիրտը: Պարտիզանները խոնարհվում են նրա վրա: Նա մեռած է, բայց լսում է գյուղացիներին ինչպես են ասում.

— Հերոս տղա էր...

Իվանը վերջնականապես չի մեռնում, ուշքի է գալիս, շարունակում է որոնումները: Մի գետ էլ կա, որ պետք է անցնել ու երևի կհասնի պարտիզաններին:

Մեկ էլ՝

— Հա՛լտ,— գերմանացիների կանչը ասես դաղում է անուրջներով տարված Իվանին:

Եվ բահը ձեռքը տալով, գերմանացիները նրան քշում են խրամատներ փորելու:

Թե ինչպես վերջացան Իվանի որոնումները, դուք ինքներդ կըկարդաք Իվ. Սերկովի «Ես ու Սանկան թշնամու թիկունքում» գիրքը և կիմանաք:

*ԱՄԱԼՅԱ ՂՈՒԿԱՍՅԱՆ*



## ԽԱՉԲԱՌ «ԱՆՎԱՆԻ ՆԿԱՐԻՉՆԵՐ»

Սկսելով սլաքով նշված վանդակից, ժամացույցի սլաքի շարժման ուղղությամբ լրացրեք հետևյալ հարցերի պատասխանները.

1. Գերմանացի նշանավոր նկարիչ և փորագրիչ։
2. Ռուս նշանավոր նկարիչ, որը պատկերել է Գլինկային՝ «Ռուսլան և Լյուդմիլա» օպերայի վրա աշխատելիս։
3. Հռչակավոր նկարիչ, «Կապտաթևիկ տատրակները», «Աթինա-հասները» և այլ նշանավոր կտավների հեղինակը։
4. Սովետական նշանավոր նկարիչ, Վ. Ի. Լենինին պատկերող բազմաթիվ նկարների հեղինակ։
5. Անվանի ռազմանկարիչ։
6. Ռուս հայտնի նկարիչ։
7. Հոլանդացի ականավոր նկարիչ, «Մարգարիտներով աղջիկը» կտավի հեղինակը։
8. Ֆրանսիացի հանճարեղ նկարիչ, «Նապոլեոնի թագադրությունը» հայտնի նկարի հեղինակը։

Կազմեց ՌՈՒԲԻԿ ՀԱԿՈԲՅԱՆԸ

## ՈՒՇԱԴԻՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՄՐՑՈՒՅԹ

Երկրորդ փուլ

1. «Տեսա ննջանում է, ճարս ինչ, գնացի»։
   Ո՞վ էր ննջանում և ինչո՞ւ։ Ի՞նչն է ծաղրվում այս պատմվածքում։
2. «... Բա մարդ թագուհու վրա կգողգոռա՞»։
   Ո՞ր նյութից է վերցված այս նախադասությունը։
   Ո՞վ է հեղինակը։
3. «Եվ հետո, ասացի, իզուր ես կարծում, թե...»
   Ինչպե՞ս է ավարտվում նախադասությունը։
   Ինչի՞ մասին է պատմում նյութը։
4. «Նապաստակի խելագար թռիչքը մի պահ շփոթեցրեց ահարկու գազանին»։
   Ո՞ր նյութից է վերցված։
   Ի՞նչ գիտեք նյութի մեջ նկարագրվող վայրի մասին։

Ի գիտություն մրցույթի մասնակիցների, հայտնում ենք, որ բարձր միավորներ ստանալու համար հարցերին ճիշտ և ամբողջական պատասխաններ պետք է տալ, գրել գրագետ, մաքուր ու խնամքով։


Լույս է տեսնում 1923 թվականից

№ 12 դեկտեմբեր 1974 թ.



# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿՍՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝

Եկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ


Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԹՈՐՈՍՅԱՆ Ժ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱԳՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (փոխ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

«Пионер» на армянском языке. Орган ЦК ЛКСМ Армении и республиканского совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375200, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15։ Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96։

ՎՖ 04830։ Պատվեր 1965։ Տպաքանակ՝ 78068։ Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 27/XI 1974 թ.։

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մնդալարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91։

